1916 № 20.—Մայիսի 15 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.; Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.; Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաարադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Դրսի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօնօրերից:

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

# ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

## ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Կիրակի, մայիսի 22-ին, նշանակուած է առաւօտեան ժամի 11-ին:

*Ընկերութեան ընթերցարանի դահլիճում*

## ԶԲԱՂՄՈՒՆՔԻ ԱՌԱՐԿԱՆԵՐՆ ԵՆ՝

1) Կենտրոնի և ճիւղերի 1915 թ. հաշուի և 1916 թ. նախահաշիւների քննութիւնը և հաստատելը:

2) Վերաստուգող յանձնաժող. զեկուցումը:

3) Խուդադեան որբանոցի մասին զեկուցումն:

4) Զեկուցումն գաղթականների և որբանոցների մասին:

5) Վարչութեան 4 հերթով հեռացող անդամների (Ի. Յարութիւնեանի, Մ. Քալանթարեանի, Ս. Լիսիցեանի և Կ. Խալաթեանի) և հրաժարուող (Ս. Խարազեանի) տեղ նոր անդամների և փոխանդամների ընտրութիւնը:

6) Վերաստուգող յանձնաժողովի 3 անդամների և երկու փոխանդամների ընտրութիւնը:

7) Ընթացիկ հարցեր:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## Ո՞Վ Է ՄԵՂԱՒՈՐ

*(Պետրոգրադի Հայկական Համագումարի առթիւ)*

—

Անցեալ տարուանից արծարծուեց մի նոր միտք. կազմակերպել Պետրոգրադում, կառավարչական բարձրագոյն և ռուս մտաւոր շրջաններից մօտ, հայոց համագումար՝ խորհրդակցելու մեր ժամանակակից ամենացաւոտ խնդիրներից մէկի մասին։

Խնդիրը բնականաբար վերաբերում էր այն հարիւր հազարաւոր հայ գաղթականներին, որոնք անմեղ զոհ դարձան արիւնահեղ պատերազմի, զրկուեցին հայրենիքից, զրկուեցին իրենց տնից-տեղից, և այսօր շուարած թափառում են մեր երկրում, մասամբ և աւերուած հայրենիքում, ողբալով իրենց թշուառ և դառը վիճակը։

Համագումարի միտքը յղացել է Մոսկուայի հայ գործիչների մէջ և հաւանութիւն ու համակրութիւն գտել նախ Մոսկուայի և ապա Պետրոգրադի հայ գաղութի կողմից։

Իսկ Կովկասի հայութեան մէջ այդ մասին հենց սկզբից արտայայտուեցին տարբեր կարծիքներ. ոմանք համաձայն էին Մոսկուայի և Պետրոգրադի հայերի մտադրութեան, ոմանք էլ, համակիր լինելով համագումարի գաղափարին, պարզ կերպով հակառակ էին Պետրոգրադ ժողովուելուն և պնդում էին, որ նպատակայարմար է համագումարը կազմել Էջմիածնում՝ Ամենայն Հայոց Կաթողիկոսի Բարձր հովանաւորութեան տակ և Նրա նախագահութեամբ։

Մոսկուայի և Պետրոգրադի գործիչները, համագումարի նախաձեռնողները, աւելորդ համարեցին այդ հարցը սկզբունքի և նպատակայարմարութեան տեսակէտից լուրջ քննութեան ենթարկելու. նրանք այդ մասին ձեւակերպած դիմում չարին Կովկասի գէթ խոշոր հայկական հաստատութիւններին, չհարցրին նրանց կարծիքը, ինքնագլուխ և ինքնաբերաբար կազմեցին մի կազմակերպիչ յանձնաժողով երկու բաժանմունքով՝ մէկը Մոսկուա, իսկ միւսը Պետրոգրադ և սկսեցին պատրաստուել համագումարի համար։ Կովկասի հայութիւնը մնում էր անտեղեակ, թէ ինչ է ծրագրւում հեռաւոր հիւսիսում։

Երբեմն հասնում էին պատահական, հատուկտոր տեղեկութիւններ, մեծ մասամբ միմեանց հակասող և մեզ համար անհասկանալի։ Կովկասում դժգոհ էին և զարմանում էին Մոսկուայի և Պետրոգրադի գործիչների այդ տեսակ տարօրինակ վերաբերմունքի վրայ։

Պարզ էր, որ համագումարը պէտք է կազմեն Կովկասի գործիչները, Կովկասի հայկական հաստատութիւնների ներկայացուցիչները, սակայն Կազմակերպիչ Յանձնաժողովը այդ անտես էր անում, այստեղի մարմինների հետ կապ ստեղծելու ոչ մի նշան չէր ցոյց տալիս, համագումարի առթիւ բանակցութեան, գրագրութեան մէջ չէր մտնում գէթ այն հիմնարկութիւնների հետ, որոնք իրենց ուսերի վրայ են վերցրել գաղթականների հոգսերի ծանր լուծը։

Այս աննորմալ դրութիւնը շարունակուեց մինչև վերջին ժամանակները, երբ Յանձնաժողովը բարեհաճեց հարցնել Կովկասի հայ հաստատութիւններին համագումարի հրաւիրելու ժամանակի մասին։

Յանձնաժողովը, ինչպէս նկատւում է, հիմնուելով զանազան տեղերից ստացած տեղեկութիւնների վրայ և ի նկատի առնելով իր յարմարութիւնները, համագումարը նշանակեց մայիսի 10—12-ին, իսկ զբաղմունքների ծրագիրը ուղարկեց աւելի ուշ։

Այդ միջոցում, ապրիլի ընթացքում, ծագեցին մի շարք կարեւոր խնդիրներ, այն է՝ ա) կառավարութիւնը առաջարկեց Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան յանձն առնել միւս Ընկերութիւնների աջակցութեամբ թէ Անդրկովկասում և թէ Տաճկահայաստանում գաղթականների սննդի գործը, հիմնելով ամենուրեք պահեստներ, սպառողական խանութներ, և այդ նպատակով կառավարութիւնը դրեց Բարեգործական Ընկերութեան տրամադրութեան տակ 900,000 ռ., բ) միաժամանակ կառավարութիւնը յանձնեց Կ. Հ. Բ. Ընկերութեան, Հայկ. Կենտ. Կոմիտէին, Նպաստամատոյցին և Հայ Գիւղատնտեսական Ընկերութեան՝ Վանի վիլայէթի հայ գիւղացութեան վար ու ցանքսի գործը կազմակերպել. գնել առանց յետաձգելու լծկաններ, գործիքներ, սերմացու և բաժանել գիւղացիներին Երկրում. առայժմ սկզբնական ծախսերի համար տրուեց 500,000 ռ., գ) Հայկ. Կենտ. Կոմիտէի վրայ դրուեց մի պարտականութիւն ևս—կազմակերպել շուտափոյթ փոխադրութիւններ—տրանսպորտներ դէպի Վան, Մուշ, Խնուս գաղթականների համար. դ) Հայոց ընկերութիւնների համար մեծ հոգս էր դարձել ժողովել որբեր, մանաւանդ տաճիկներից նոր նուաճած երկրներում, և նոր որբանոցներ բանալ, որոնց համար Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանցի շնորհիւ կառավարութիւնը համաձայնել էր եօթ հազար երեխայի նպաստ տալ, և ե) վերջապէս ապրիլի վերջերում սկսեցին Կովկասեան զեմստուոյի նիստերը և զեմստուոն զբաղեցրեց շատերին,

քանի որ այդ հարցը շօշափում էր Կովկասի հայութեան ամենակենսական խնդիրները և նրա ամբողջ ապագան։

Այս հանգամանքները և համագումարի ծրագրի շատ ուշ ստանալը անհրաժեշտօրէն հարկադրեցին Կովկասի հայկ. հաստատութիւններին և գործիչներին խնդրել Կազմակերպիչ Յանձնաժողովին՝ յետաձգել համագումարը մայիսի վերջը կամ յունիսի սկիզբը։

Խնդիրը մերժուեց։

Այդ օրերը եկաւ Թիֆլիս Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանցը, որը յայտնեց, որ եթէ յետաձգուի համագումարը, ինքը ամենայն հեշտութեամբ նորից կը ստանայ թոյլտուութիւն, որով ուրեմն չէզոքանում էր յանձնաժողովի յետաձգման ընդդէմ լինելու գլխաւոր առարկութիւնը։

Թիֆլիսի ընկերութիւնների ներկայացուցիչները նորից հեռագրեցին Կազմակերպիչ Յանձնաժողովին յետաձգելու մասին, բայց կրկին մերժում ստացան։

Պ. Պապաջանեանցը իր կողմից հեռագրեց, որ հարկաւոր է յետաձգել և որ նա, երբ հարկաւոր լինի, կըստանայ նախարարից թոյլտուութիւն։

Պատասխանը եղաւ բացասական։

Կազմակերպիչ Յանձնաժողովը մայիսի 7-ին վերջին անգամ հեռագրեց, որ համագումարը անպայման կայանալու է մայիսի 10—12-ին, գուցէ մի 2—3 օր էլ երկարաձգուի։

Թիֆլիսի և ուրիշ տեղերի շատ հաստատութիւններ հեռագրեցին, որ հրաժարւում են մասնակցելուց, որովհետև Յանձնաժողովը իր կարգադրութեամբ զրկում է նրանց մասնակցելու հնարաւորութիւնից։

Համագումարին մասնակցելուց հրաժարուեցին՝ Էջմիածնի Եղբայրական Օգնութեան Կոմիտէն, Կ. Հ. Բ. Ընկերութիւնը, Հայկ. Կենտ. Կոմիտէն, Նպաստամատոյց Ընկերութիւնը, Հայոց Գիւղատնտեսական Ընկերութիւնը, Միացեալ Գիւղատնտեսական կոմիտէն։

Բացի այս հաստատութիւնները, որոնք զբաղուած են գաղթականների վիճակով, հրաժարուել են մասնակցելուց Ներսիսեան դպրոցը, Ազգային Բիւրօն և այլն։

Թէ որքան անփոյթ է կազմած Յանձնաժողովի կողմից հրաւիրուածների ցուցակը, բաւական է նկատել, որ հրաւիրուած են ընկերութիւններ, որոնք ոչ մի կապ և առնչութիւն չեն ունեցել գաղթականութեան գործերի հետ. հրաւիրուել են ներկայացուցիչներ փոքրիկ և հասարակութեան անյայտ խմբերից. իսկ մեծ ընկերութիւններին հրաւիրելիս միաժամանակ ուղարկել են հրաւէրներ և նրանց բաժանմունքներին կամ ճիւղերին՝ առանց կենտրոնական վարչութիւններին տեղեկացնելու։ Կարծես, Կազմակերպիչ Յանձնաժողովը ձգտել է մի նպատակի, որ որքան կարելի է բազմամարդ լինի համագումարը։ Այդ նպատակի համար կարիք չկար հեռաւոր երկրներից—Կովկասից սկսած մարդիկ ժողովել հեռագրերով, հազարներ ծախսել և ուրիշներին էլ ծախսերի տակ գցել. մարդկանց թիւը կարելի էր հենց Մոսկուա և Պետրոգրադ լրացնել։ Յանձնաժողովը այնքան է յափշտակուել իր այդ ձգտումով, որ հակառակ իր գրաւոր կոչին՝ վաղօրօք ներկայացնել զեկուցումներ, տեղեկագրեր, վերջին օրերը հեռագրում էր՝ «շտապեցէք գալ թէկուզ առանց պատրաստի զեկուցումների և տեղեկագրերի»։

Ահա թէ ինչպէս կատարեց Մոսկուայի և Պետրոգրադի Կազմակերպիչ Յանձնաժողովը իր վրայ վերցրած հասարակական մեծ գործը։

Արդ՝ ինչ պատասխան կարող է տալ Յանձնաժողովը մի շարք ինքնըստինքեան ծագող հարցերին.

1. Իրաւունք ունէ՞ր Կազմակերպիչ Յանձնաժողովը ինքնագլուխ նշանակել համագումարը Պետրոգրադում, թէ նա պարտաւոր էր նախ այդ հարցը դնել Կովկասեան հայկական հաստատութիւնների առաջ քննութեան, չբաւականանալով մի քանի թերթի տեղեկութիւններով.

2. Պարտաւո՞ր էր նա ուղարկել վաղօրօք ծրագիրը Կովկաս՝ քննելու և տեղական հաստատութիւնների վարչութիւնների դիտողութիւնները ի նկատի առնելու.

3. Կարո՞ղ էին կովկասեան հաստատութիւնները ուղարկել համագումարին մասնակցելու պատգամաւորներ, քանի որ նրանք ծրագիրը ուշ ստանալու պատճառաւ չը կարողացան ժողովներ ունենալ, քննել, կարծիքներ արտայայտել, որ պատգամաւորները գնային իրենց հաստատութիւնների կարծիքներով և որոշ մանդատներով.

4. Արդեօք պարտաւո՞ր չէր նա յետաձգելու համագումարը, քանի որ Կովկասում մի շարք գերագոյն խնդիրներ էին մշակւում և գործեր կատարւում անչափ կարևոր թէ հայ գաղթականների և թէ Կովկասի հայութեան համար. մանաւանդ որ յետաձգումը տևելու էր մի 20—25 օր և թոյլտուութեան ստացումն ապահովուած էր պ. Պապաջանեանի կողմից.

և 5. Վերջապէս, ինչ իրաւունքով Յանձնաժողովը իրեն թոյլ էր տուել շեղուել սկզբնական նպատակից և ծրագրի մէջ, բացի գաղթականական խնդիրներից, մտցնել և այնպիսի հարցեր, օրինակ, 19-րդ կէտը ծրագրի («սկզբունքային խնդիրներ յարուցանող զեկուցումներ»), որոնք իրենց անորոշութեամբ թոյլ կը տան այնպիսի խնդիրներ յարուցանելու, որոնք պառակտում ու խռովութիւն կարող են առաջ բերել։

Մի՞թէ համագումարի նպատակն էր նոր անդունդներ ստեղծել հասարակութեան մէջ։

Այս և համանման հարցերի իսկական պատասխանը ցոյց են տալիս, թէ ո՜վ եղաւ մեղաւորը, որ Ռուսաստանի մայրաքաղաքի առաջին հայկական համագումարը դըժբաղդաբար չամփոփեց իր մէջ հայութիւնը։

Յիշեալ ձևով հրաւիրուած համագումարը դժուար թէ ունենայ բարոյական հեղինակութիւն և արժէք։

Միակ պատուաւոր ելքը կը լինէր այն, որ ժողովը իրեն սահմանափակէր մասնաւոր խորհրդակցութեամբ, ցանկութիւններով, և որոշումներ չը կայացնէր ընդհանրացման նպատակով։

Ահա թէ ինչ է նշանակում անիմաստ յամառութիւ-

նը, և մանաւանդ երբ վայրկեանը լուրջ և պատասխանատու է։

Այս էլ մի նոր ցաւալի երևոյթ մեր հայկական իրականութեան։

Ս. Ց.

# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում այս շաբաթ նշանակալից դէպքեր գրեթէ չեն եղել։

Դիարբեքիր-Համիդի վրայ գործողութիւնները սահմանափակւում էին առաջապահ զօրամասերի թեթևակի ընդհարումներով։ Ծովամերձ շրջանում ռուսների համար յաջող մի երկու թեթև կռիւ տեղի ունեցան Տրապիզոնից հարաւ-արևմուտք՝ Գիւմիւշխանէի գծի վրայ։ Սրանցով էլ սպառւում են պաշտօնական հաղորդագրութիւնները։ Սակայն այս հանդարտութեան հետ միասին յամառ լուրեր են շրջում, որ թիւրքերը ծովամերձ շրջանում և մինչև իսկ Համիդ-Տիգրանակերտի գծի վրայ գերմանացիներից, աւստրիացիներից և նոյն իսկ բուլղարներից բաւական օգնական ոյժեր են ստացել։ Այս լուրերի մէջ անկասկած չափազանցութիւն կայ. օրինակ՝ եթէ նոյն իսկ Վերդէնի հոգսն էլ չլինէր՝ Գերմանիան անկարող կը լինէր այսքան կարճ ժամանակում զօրքեր հասցնել Համիդ-Տիգրանակերտ. բայց և այնպէս անկասկած է, որ թիւրքերը, մանաւանդ ծովամերձ շրջանում, պատրաստութիւններ են տեսնում՝ մի վճռական գործով յետ շպրտելու ռուսներին Պոնտական Տաւրոսի ամուր դիրքերից և այդպիսով՝ նրանց աջ թևի վրայ վտանգ ստեղծելով կասեցնելու ձախ թևի առաջացումը դէպի Համիդ-Դիարբէքիր և Մոսուլ։ Անհաւանական չէ, որ այս ծրագիրն իրագործելու համար գերմանացիները Պոլիսն ու Դարդանելը պաշտպանող երկու գնդերից մի քանիսը դրած լինեն թիւրքերի տրամադրութեան տակ։

Պարսկական ճակատի վրայ ռուսներն այս շաբաթ գրաւել են Սակկըզ և Սեյդիա քաղաքները։ Առաջինը գտնւում է Ուրմիոյ լճից հարաւ-արևմուտք, իսկ երկրորդը՝ անցեալ շաբաթ գրաւուած Բևանդուզ քաղաքից հարաւ-արևելք։ Այս քաղաքների գրաւումը միայն տակտիքական նշանակութիւն ունի՝ իբրև ռուսների հաղորդակցութեանց ճանապարհներն ապահովող միջոց։

Միջագետքի ճակատում զօրավար Լէքը Տիգրիսի աջ ափին թիւրքերից մի քանի ամրութիւններ է խլել և նրանց յետ մղել դէպի իրենց պաշտպանութեան գլխաւոր դիրքերը։

### ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում այս շաբաթ միայն մանր ընդհարումներ տեղի ունէին, գլխաւորապէս Ռիգա-Դվինսկ գծի վրայ։

Ֆրանսական ճակատում կռիւները շարունակւում են Վերդէնի տակ արտակարգ ուժգնութեամբ։ Շաբթուայ սկզբին յաջողութիւնն առաւելապէս ֆրանսացիների կողմն էր։ Նրանք Աւոկուրի անտառում, Մորտոմի հարաւ-արևմտեան լանջերի և «304» ամրութեան վրայ գերմանացիների գրաւած դիրքերի դէմ յարձակումներ գործելով՝ ահագին կորուստներ պատճառեցին թշնամուն և յետ շպրտեցին դէպի իրենց երկրորդ շարքի ամրութիւնները։ Նոյն իսկ նրանց ձեռքն անցան Դուամոնի ամրութիւններից մի քանիսը, որ այնքան ծանր զոհերի գնով գրաւել էին գերմանացիք փետրուարի յարձակումների ժամանակ։ Սակայն վերջին օրերս գերմանացիք, ինչպէս պաշտօնական հաղորդագրութիւնն է ասում, ոչ մի մարդկային զոհի առաջ կանգ չառնելով՝ յաջողեցին գրաւել Կրիւմիր գիւղն իր շրջակայքով, ինչպէս նաև մի քանի ամրութիւններ Մորտոմի շրջանում։ Այս բոլորով հանդերձ բոլոր ռազմագէտների կարծիքով ֆրանսացիների դրութիւնը ներկայումս աւելի քան ապահով է։

Իտալական ճակատում աւստրիացիները իրանց կուտակած զօրքը, որի մասին խօսել ենք անցեալ շաբթուայ տեսութեան մէջ, գործի դրին հարաւային Տիրոլում, Ադիգէ և Սուգանօ գետերի հովտում՝ իտալական շղթան պատռելու և Վենետիկի թիկունքը դուրս գալու դիտաւորութեամբ։ Շնորհիւ իրենց յաջող դիրքերի նրանք կարողացան իտալացիներին դուրս մղել առաջաւոր դիրքերից. իսկ Սուգանոյի հովտում մինչև անգամ յետ քշեցին նրանց դէպի իրենց հողը։ Բայց իտալացիների յամառ դիմադրութիւնը աւստրիացիներին այնքան թուլացրեց, որ վերջին օրերս նրանք այլևս առաջ շարժուելու անկարող հանդիսացան։ Ռազմական աշխարհում Աւստրիան նոյն «հիւանդ մարդու» հռչակն ունի, ինչ որ Տաճկաստանը քաղաքական աշխարհում։ Նրա գլխաւոր հիւանդութիւնը իր դանդաղկոտութիւնն է, որի շնորհիւ նրա գրեթէ բոլոր պատերազմները, տասնևութերորդ դարու վերջերից սկսած, պարտութեամբ են վերջացել։ Նոյն դանդաղկոտութիւնը երևան եկաւ և վերջին կռիւների ընթացքում և հնարաւորութիւն տուեց զօրավար Կադորնին առաջին անյաջողութիւններից յետոյ ամրանալ նոր դիրքերում և կասեցնել աւստրիացոց առաջխաղացութիւնը։

Մնացեալ ռազմաբեմերում և ռազմագծերում այս շաբաթը խաղաղ անցաւ։

* * *

---

## ԹԻՒՐՔԵՐԻ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ

*Այն ժամանակ, երբ շոյւում և պարգևատրւում էին քիւրդերը չնայելով խնդրոյ ճանաչողների զգուշացումներին, ահա թէ ինչ ենք կարդում Պետրոգրադի պաշտօնական թերթում.*

Правительствен. Вѣстникъ-ը գրում է այն հանգամանքների մասին, որոնք արգելք եղան անգլիացոց և ռուս զօրքերին առաջանալու Միջագետքի և Փոքր Ասիայի ռազմաբեմերում։ Գլխաւոր արգելքն այստեղ հանդիսացան ոչ թէ թիւրքերի զինուած ոյժերը, այլ տեղական պայմանները, առանձնապէս տեղական ազգաբնա-

նոյն այդ խոտալական ոգով իրանց հայենիքի խօսքն են հնչեցնում։ Ահա Ալիշանը։ Դասախօսը յուզում է ամբողջ դահլիճը, վառվռուն շեշտերով պատմելով իր հանդիպումը մեծ ծերունու հետ Ս. Ղազարի վանքում։ Ալիշանին հետևում են Պէշիկթաշլեանը, Գամառ-Քաթիպան, Խրիմեանը։ Այս երկար շարքը վերջացնում է դասախօսը, մանրամասն և երկար կանգ առնելով Սիամանթոյի և Դանիէլ Վարուժանի առջև։ Այս կտորն էլ ամենագեղեցիկն ու ամենադողերիչն էր Ահարոնեանի դասախօսութեան մէջ։ Հայ անդուգական ատենախօսը կատարելապէս այլափոխւում է, հրաշունչ է դառնում, բարձր ու բարձր է տանում երկու՝ ճիշտ որ մեծ, անօրինակ բանաստեղծներին, որոնք ծնուեցին, աստուածային խոշոր տաղանդով օժտուեցին իրանց ցեղի զարհուրելի ճակատագիրը երգելու համար։ Ջարդերի միջից դուրս եկած, ջարդերով ապրած սերունդների հոգու մէջ է մտցնում Ահարոնեանը իր ունկնդիրներին։ Կրակոտ է նրա խօսքը, վարպետօրէն է ընտրութիւններ արել երկու բանաստեղծների գոհարներից։ Եւ մենք, ունկնդիրներս, մտնում ենք մի՝ խնկապէս ուրոյն, խնկապէս անօրինակ աշխարհ, ուր արիւն ու արցունքները միայն վիշտ ու յուսահատութիւն չեն ծնում, այլ և յոյսեր, այլ և ապագայի գեղածիտ արշալոյսներն են ծաւալում։

Ի՛նչ զարմանալի աշխարհ, ի՛նչ վեհ նուիրական ժողովուրդ։ Ահարոնեանը այնքան լաւ գիտէ նրան, այնքան լաւ նկարագրել է նրան իր գրչով և այժմ ուրիշների գրիչներով է պատկերացնում այդ յաւիտեան դժբախտ և յաւիտեան սիրելի ժողովուրդը։ Ակամայ արտասուքներ ես կաթեցնում նրա առջև, այդ մեծ նահատակի առջև։

Այս էր, համառօտ գծերով, Ահարոնեանի ծրագիրը։ Կարելի է առարկութիւններ անել նրա դէմ, բայց ոչ թէ ըստ էութեան, այլ լոկ ծրագրային տեսակէտից։ Օրինակ, Խրիմեանը գերազանցօրէն արձակագիր բանաստեղծ է։ Եւ եթէ պէտք եղաւ նրան յիշատակել հայրենասէր երգիչների շարքում, ինչո՞ւ այդ պէտքը զլացուեց Աբովեանին կամ Րաֆֆիին։

Բայց սրանք մանրամասնութիւններ են։ Ներկայ րոպէիս շատ բան չը պահանջենք Ահարոնեանից։ Շնորհակալ ենք և նրա համար, ինչ նա տուեց այդ երեկոյ՝ ծանր պայմանների մէջ կատարուած աշխատանքի հետեւանքով։

Գեղեցիկ և գող էր հնչում հայ հայրենիքի աւետարանը Արտիստիք Ընկերութեան հոյակապ շինութեան մէջ։ Եւ թող միշտ այդպէս լինի նա։ Համայն աշխարհը, բոլոր ազգերը, նոյն իսկ վայրենիները, ունին այդ աւետարանից։

Եւ հայը, հետևելով իր տաղանդաւոր հեղինակի հոգեչունչ յորդորներին, պիտի աւելի պինդ փարէ իր արիւնոտ աւետարանին…

Լէօ

## ՓԱԽՍՏԱԿԱՆ ԵՐԵԽԱՆԵՐԻ ԳԻՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

«Համբաւաբեր»-ի № 5-ի մէջ իշխ. Մ. Թումանեանը իր «Հողագործութիւն փախստական երեխաների համար» յօդուածում շատ լաւ բացատրում է հողագործութեան բարձր նշանակութիւնը հայերի համար, ասելով՝ քանի որ ազգի հիմքը գիւղացութիւնն է, ուստի առանձին ուշադրութիւն պէտք է դարձնել փախստական երեխաներին, մի կարգ ուսումներ տալով հանդերձ, նրանց մէջ պէտք է զարգացնել սէր հողագործութեան։

Այս առաջարկը խիստ օգտակար և գեղեցիկ գտնելով, ես էլ տալիս եմ թեթև ծրագիր և հրաւիրում եմ որբախնամ մարմինների ուշադրութիւնը քանի դեռ ուշ չէ։

Քանի որ պատերազմը շարունակւում է, Հայաստանը գտնւում է քարուքանդ դրութեան մէջ և կեանքը կամաց, զուցէ ուշ, կը վերաստեղծուի հայոց գաւառներում, այժմեանից պէտք է կազմակերպել գիւղատնտեսական աշխատանքներ փախստական երեխաների համար։

Դպրոցական շրջանը երկուքի պէտք է բաժանել՝ ամառային—դաշտահին և ձմեռային—դպրոցական։ Ձմեռային—դպրոցական շրջանը սկսելու է հոկտեմբերին և մանաւորապար պարապելու է դասերով, պայմանների ներածի չափով էլ ձեռագործներով (ինչպէս, կողովագործութեամբ, գլխարկագործութեամբ ցորենի ցողունով, հիւսնութեամբ, կօշկակարութեամբ և այլն)։ Ամառային գիւղատնտեսական աշխատանքների շրջանը պէտք է սկսել ապրիլից։ Փախստականների որբանոցները իրենց տրամադրութեան տակ ունենալու են, ամենալաւ պայմաններով, կլիմայով փորձադաշտեր, հողեր։ Եթէ որբանոցը գտնւում է օրինակ Թիֆլիսի պէս տեղերում, ամառային շրջանին փոխադրելու է յարմար գիւղեր։ Որբերի համար ամենայարմար աշխատանքներ հետևեալները կարելի է համարել. 1. բանջարաբուծութիւն, կարտոֆիլի, սոխի, լոբու, կաղամբի, վարունգի և զանազան բանջարեղէնների և համեմների մշակութիւն, 2. ցորենի, գարու և ծխախոտի մշակութիւն, 3. ծառամշակութիւն, 4. մեղուապահութիւն, շերամաբուծութիւն։ Հողը գործելու համար ամեն մի որբ կամ աշակերտ ունենալու է իր բահը և ուրիշ անհրաժեշտ գործիքներ, ինքը պէտք է մշակի, փորի, աղրի, ցանի, ջրի, քաղհան անի, բանջարանոցը կամ ցորենի մարգերը։ Որբանոցն ունենալու է Դադանի փեթակներ և շերամատներ. աշակերտներից աւելի հասկացողները կարող են զբաղուիլ այս ճիւղերով. պէտք է մշակել անտառային և պտղատու ծառեր։ Այս աշխատանքները քանի որ փոքրերի համար է (8-ից 15 տարեկան), օրական 4-5 ժամից աւելի չպէտք է լինի։ Աշակերտներին ղեկավարելու են ոչ թէ հասարակ պարտիզպաններ, որ օգտակար չեն լինում, այլ մասնագէտ գիւղատնտեսներ, որոնք թէ փախստականների և թէ ռուսահայերի մէջ կը գտնուին։

Այս գործերը երեխաների համար զբօսանք պէտք է համարել. այսպիսով նրանց միջա կարելի է կապել հողի, ջրի հետ։ Իսկ յետոյ որբերը իրենց աշխատանքներով կը վաստակեն ապրուստի մի մասը, որը նոյնչափ կարևոր է, առողջական վիճակն շատ լաւ կը լինի, կազատէ նրանց այլասերումից, վատ սովորութիւնից, որովհետև մարդուս առաջին դաստիարակը բնութիւնն է։

Տիգրան Մահլէրաշեան

## ԳԱՒԱՌ

ՍՈՒԽՈՒՄ — Մեր ծխական դպրոցների դրութիւնն անմխիթար է ամեն կողմից, և ամեն օր աղաղակներ են լսւում այդ մասին, միջոցներ առաջարկւում, բայց դրութիւնը էլի նոյնն է մնում։

Այդպիսի անբնականոն (աննորմալ) կեանք ունենալու պատճառը համարւում է ընդհանրապէս դպրոցների բարձր իշխանութիւնը և ամենից աւելի տեղական հոգաբարձութիւնը։

Սկզբից ասեմ, որ ես հրապարակ չեմ գալիս նրանց պաշտպանելու, բայց և ամեն բանում մեղադրել մարդկանց, որոնք կամաւոր յանձն են առել մի հասարակական գործ կատարելու, երբ մարդիկ իրենց տնտեսական անթիւ հոգսերին աւելացրել են նաև մի այդպիսի՝ այն էլ խոշոր հոգս պահանջող պատասխանատու գործ, մենք իրաւունք չըպէտք է ունենանք միշտ նրանց մեղաւոր համարելու առանց իրերի խորքին ու իսկական պատճառը որոնելու։ Պէտք է դրամի միւս երեսն էլ նայել։

Մեր գիւղական դպրոցներում հոգաբարձութիւնը, շատ սակաւ դէպքերում, միմիայն փող մատակարարողի և ուսուցիչների յարմարութիւններն հոգացողի դերից բացի այլ բան չունի, իսկ Ցեացեալը ամբողջապէս գտնւում է ուսուցիչների կամ աւելի շատ աւագ-ուսուցիչների ձեռքերում։ Եւ շատ քիչ բացառութեամբ համարեա բոլոր տեղի համար հաստատ կերպով կարելի է ասել, որ նրանք կարող են դպրոցը կամ քանդել կամ շինել։

Ամբողջ գործը հիմնուած է բարեխիղճ կամ անբարեխիղճ լինելու վրայ։

Չերկարեմ խօսքս, բերեմ Սուխումի շրջանում կատարուած մի իրողութիւն, որը պաշտօնապէս ստուգուած է։

Երկար ջանքերից յետոյ մի կերպ յաջողուեց շրջանիս գիւղերից մէկում երկար տարիներ գոյութիւն ունեցող տիրացուական դպրոցի փոխարէն բաց անել երկու դասատնով ծխական դպրոց։

Ժողովուրդը ուրախութեամբ և տաք կերպով կպաւ գործի, եղան մարդիկ, որոնք ոչինչ չը խնայեցին և 40 տուն ունեցող այդ գիւղը կազմեց մօտ 1500 ռուբլու նախահաշիւ, նշանակելով ծխական տուրք։

Եւ երբ շրջանիս հայ դպրոցների վերահսկիչներն այցելում են այդ դպրոցը, տեսէք թէ ինչ են յայտնագործում։

Դպրոցի նախահաշուի մէջ մտած է լինում 135 ռ. ծառայի ռոճիկ, բայց որովհետև ծառայ ունենալու բոլոր աշխատանքներն ապարդիւն են անցնում, ուսուցիչը պահանջում է, որ այդ փողն իրեն տրուի, որ ինքը կանէ ամեն ինչ, բայց դուրս է գալիս, որ ծառայի գործը կատարել է տալիս աշակերտներին, չնայելով որ ինքը մանկավարժական տեսակէտով դէմ է եղել առաջ։ Աշխատենք ազատուել այդպիսիներից։

Եղուարդ.

* * *

ՑԱՐՍԿԻԷ-ԿՈԼՈԴՑԻ.—Կով. Հ. Բ. Ընկ.-թեան Ցարսկիէ-Կոլոդցիի ճիւղի վեց ամեայ գործունէութիւնը։

Սղնախի գաւառի Ցարսկիէ-Կոլոդցի աւանում բնակւում են 30 տուն վրացախօս հայ, որոնք ունեն եկեղեցի և դպրոց։ Աւանում բնակւում են և մօտ 300 տուն ռուս և 65 տուն վրացի։ Աւանից 3 վերստ հեռու բարձր ապառաժ ժայռի վրայ կառուցուած է վրաց Թամար թագուհու այժմ աւերակ ամրոցը։ Պատմում են, որ Թամար թագուհին ամառներն այստեղ էր անցկացնում, ուստի և այս տեղը մի աղբիւրի պատճառով հնումը կոչուել է «Դէդօփլիս ծղարօ», որ ռուսները վերածել են Царскiе-Колодцы անուան։ Այստեղ կան շատ ջրհորներ։

Հայերը բնակւում են այստեղ մօտ 40 տարի, պարապում են վաճառականութեամբ, խօսում են վրացերէն, բացառութեամբ 6 տուն գոկերի։ Նրանք գաղթել են զանազան տեղերից. մեծամասնութիւնը Սղնախից։

Կ. Հ. Բ. Ը.-թեան ճիւղն այստեղ բացուեց 1909 թուականի նոյեմբերին՝ մասնակցութեամբ 15 անդամի—այժմ 35 է։ Ճիւղի առաջին հոգսն էր մայրենի լեզու տարածել վրացախօս հայերի շրջանում, ուստի 1909 թ. աշնան վերաբացուել էր հայոց դպրոցը, որ բացուել էր 1893 թ. և փակուել 1896 թ.։

Տեղական միջոցների սղութեան պատճառով 1910-թուին ճիւղը խնդրեց կենտրոնից 100 ռ. նպաստ տարեկան դպրոցի պահպանութեան համար, որ ստանում է սկսած 1910 թուից։ Ճիւղն իր կողմից աւելացնում էր 75 ր. նպաստ, թոշակներից էլ գոյանում էր մօտ 100 ռ., իսկ մնացեալ ծախսը ծածկւում էր կչռոցից, եկեղեցուց, ներկայացումներից, նուէրներից։

Դպրոցը սովորեցրել է վրացախօս երեխաներին գրել-կարդալ-խօսել հայերէն. ունի 1 ուսուցիչ։ Տարեկան միջին թւով սովորել են մօտ 20 երկու սեռի սան։ Երկրորդ հոգսը ճիւղի եղել է գրադարան-ընթերցարանը, որ բանալու իրաւունքը նահանգապետից ստացել է 1910 թուականից։ Գրադարան-ընթերցանին կենտրոնը ուղարկում է մօտ 300 գիրք։ Ստացւում են հայերէն, ռուսերէն, վրացերէն լրագրներ, որոնց վրայ տարեկան ծախսուել է 35—50 ռ.։ Լրագրներ և գրքեր մեծ մասամբ տներում են կարդում, քանի որ ամենքը զբաղուած են։ Այժմ գրադարանն ունի մօտ 500 գիրք մանուկների և հասակաւորների ընթերցանութեան համար։ Առաջիկայում ճիւղը մտադիր է ձեռք բերել նաև ռուսերէն և վրացերէն գրքեր և կարդացնել ռուսներին և վրացիներին։ Գրադարան-ընթերցարանը ձրի է։ Լրագիրների և գրքերի համար ամեն տարի ճիւղը կազմակերպել է երեկոյթներ և ներկայացումներ։ Գրադարանապետ հաստատուած է նահանգապետից Յակոբ քահ. Գրիգորեան։

Ղեկավարուելով խորհրդից ստացած հրահանգներով՝ ճիւղը 1910 թ. ձեռնարկում է հիմնել մանր վարկի ընկերութիւն։ Սակայն բարձր մանր վարկի տեսչը Պետրոգրադում մերժեց հաստատել գիւղական բանկ, պատճառաբանելով, թէ ստորագրողների մեծ մասը վաճառականներ են։

Հայերից օրինակ վերցրին ռուսները, որոնք առանձին խնդրով դիմեցին իշխանութեան և իրաւունք ստացան հիմնել մանր վարկի ընկերութիւն։ Դրանց տրուեց հիմնական դրամագլուխ 7000 ռ.։ Այդ բանկին մասնակցում են միայն ռուս գիւղացիներ. հայերից և վրացիներից ոչ մի անդամ չը կայ։

Այնուհետև ճիւղը դիմեց նահանգապետին, խնդրելով թոյլ տալ հիմնել փոխատու խնայողական դրամարկղ վաճառականների և արհեստաւորների համար, իսկ նահանգապետի ցուցմամբ 1914 թուին հասարակութիւնը խնդիր ուղարկեց ֆինանսների նախարարին, բայց պատասխան ստացուեց, որ վաճառականներն իրաւունք չունեն հիմնել այդպիսի գանձարան, ուստի վճռուեց հիմնել փոխադարձ վարկի ընկերութիւն, ինչպէս Սղնախում։ Այս ժամանակ ծագեց պատերազմը և գործը մնաց առկախ։ Յոյս ունենալով, որ բանկը կը հաստատուի կառավարութիւնից, մասնաւոր կերպով հաւաքուեց դրամագլուխ մօտ 2000 ռ., սակայն մերժման պատճառով գործը քայքայուեց։

Մեծ նշանակութիւն տալով ժողովրդական ներկայացումներին, ճիւղը հնարաւորութեան չափ կազմակերպել է ներկայացումներ հայերէն և վրաց լեզուներով, նոյնպէս երեկոյթներ։ Տարաբաղդաբար, թատրոնական դահլիճ չը լինելու պատճառով ներկայացումներ լինում էին միայն ամառները, բացօդեայ, ուսումնարանի գաւթում կամ պարտէզում։ Պակասում էին սիրող ոյժերը, մանաւանդ իգական սեռից։ Գիւղական օրիորդները գեռ ես համարձակութիւն չունեն բեմ դուրս գալ, ուստի ներկայացումներին մասնակցել են միայն տիկիններ՝ Ս. Ամիրեանց և Ա. Գրիգորեան։ Թատրոնական սրահը շինելու համար կայ ֆոնդ 115 ռ.։ Պատերազմից յետոյ հաւանական է, որ շինուի դահլիճ կամ բառոնգօ ներկայացումների համար։

Ցարսկիէ-Կոլոդցիի հայոց դպրոցն ու եկեղեցին չունեն ոչ կալուած և ոչ դրամագլուխ։ Դպրոցի ապահովութեան համար ճիւղն որոշեց կառուցել խանութներ երեք աչքով, որը կարող էր եկամուտ բերել տարեկան մօտ 200 ռ.։ Հաւաքեցին քար, կիր, աւազ, գերաններ, խոստանում էին՝ փոխառութիւն, կենտրոնն էլ 300 ռ. յատկացրեց փոխարինաբար, բայց պատերազմի պատճառով գործը յետաձգուեց։

Ցանկանալով ազգաբնակութեան ծանօթացնել շերամապահութեան և եկամուտ ստեղծել դպրոցի համար, ճիւղը 1910 թ. խնդիր ուղարկեց պետական կալուածների վարչութեան, խնդրելով 3 դեսեատին հող նուիրել հայոց դպրոցին և եկեղեցուն—թթենիներ տնկելու համար։ Վարչութիւնը բացատրեց, որ օրէնքով հարցը պէտք է բարձրացնել թեմական առաջնորդի միջոցով։ Գործն ուղարկուած է Ս. առաջնորդին։ Շիրակի անտառապետը համակրում է գործին և սահմանագծել է արդէն ցանկալի հողը և տուել է մակարդակ։

Ներկայ համազգային աղէտի ժամանակ ճիւղն անմասն չը մնաց։ Ճիւղն հաւաքել է և ուղարկել է կենտրոնին յօգուտ վիրաւորների, կամաւորների և փախստականների 300 ռ. և 6½ պուդ շորեղէն։

Ցարսկիէ-Կոլոդցի. Յ. ք. Գրիգորեան

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

— Պետրոգրադի Միջազգային Առեւտրական դրամատան վարչութիւնը դիմելով Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդին, ի յիշատակ նոյն դրամատան Թիֆլիսում բացուած բաժանմունքի, խնդրել է տալ Կ. Հ. Բ. Ը-թեան մշտական անդամութեան մրցագիր, վճարելով այդ առթիւ որոշած 100 ռուբլի։

— Թիֆլիսաբնակ Տիգրան Պետրոսեան Թիպուխեանը ներկայացնելով 100 ռուբլի, նոյնպէս խնդրել է տալ իրեն մշտական անդամութեան մրցագիր։

### ՆՈՒԷՐՆԵՐ

— Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է Սոֆիա Սերգէյեան և Ալէքսէյ Յովհաննիսեան Կարակաշներից հանգ. Նինա Գաբրիէլեան Սունդուկեանցի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ չքաւորների 25 ռ.։

— Թիֆլիսի Առաջին Լոմբարդից յօգուտ փախստականների 8 ռ. 28 կ.։

— Կ. Հ. Բ. Ը-թեան Նախագահ Ս. Յարութիւնեանի միջոցով Ա. Վարդապետեանի կտակած գումարից 210 ռ.։

***

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է Սուխումի «Գութ» ընկերութիւնից Վերին և Վարի Եաշարա գիւղերից Յովհաննէս Շամախեանի և Յոհան քահ. Տէրտէրեանի նախաձեռնութեամբ ժողոված 84 կտոր ճոթեղէն և կարուած շորեր։

***

Հանգուցեալ Նինա Գաբրիէլեան Սունդուկեանցի ազգականներից ի յիշատակ հանգուցեալի յօգուտ Ընկ. ճաշարանի շնորհակալութեամբ ստացուած է 50 ռ.։

***

Տիկին Մարիամ Ալէքսանդրեան Խարազեանից շնորհակալութեամբ ստացուած է յօգուտ փախստականների 300 ռ.։

***

«Մի բաժակ թէյ», Գոլովինեան պողոտայի Տէր-Մարգարեանի տանը, ապրիլի 1-ից—ց1-ն մայիսի 1916 թ. ստացուած է թէյի, սուրճի և այլն վաճառումից 5947 ռ. 18 կ. և թէյատանը կախուած դրամատուփերից 116 ռ. 97 կ., ընդամենը 6064 ռ. 15 կ., վճարուած է թէյի, շաքարի և այլ մթերքների 3149 ռ. 32 կ., ամանների և այլ պիտոյքների 372 ռ. 85 կ., երաժշտական խմբին 198 ռ., ծառայողներին ռոճիկ 185 ռ., թէյատան բնակարանին 300 ռ. և մանր ծախսերի 35 ռ. 78 կ., ընդամենը 4240 ռ. 95 կ., մնում է մաքուր արդիւնք 1823 ռ. 20 կ.։

### ՃԻՒՂԵՐ

Վերին-Ագուլիս.—Կ. Հ. Բ. Ը-թեան տեղիս վարչութիւնը այսու յայտնում է իւր շնորհակալութիւնը մեծ. պ. Սարգիս Միքայէլեանին, որ Մոսկուայից իւր դուստր Սաթենիկի յիշատակին ուղարկել էր 100 ռ. և մեծ պ. Յովհաննէս Սարգ. Սուլխանեանցին, որ Ջուլֆայից ուղարկել և Սարգիս Սուլխանեանցի յիշատակին 100 ռ.։

***

Բաթում. Անցեալ 1915 թ. վարչութեան կազմը եղել է՝ նախագահ՝ Մ. ա. ք. Մելեան, գանձապահ՝ Շ. Սայիփեան, անդամներ՝ Ն. Մեհրաբեան, Լ. Շարանեան։ Տարուայ ընթացքում եղել են 30 նիստ։ Վարչութիւնը զբաղուած է եղել գլխաւորապէս պատերազմից վնասուածներին օգնելու գործով։ Ճիւղը բացել է «Մի բաժակ թէյ» և կատարել է միօրեայ ժողովարարութիւն թէ դրամի և թէ իրերի։ Դրամական նպաստներ է տուել 40 ընտանիքի կամ 151 ասորու, 120 ընտ. կամ 478 հայի, հագուստ 76 ընտանիքի կամ 269 հոգու. յոյն գաղթականներին բաժանուել է 300 ռ., ճիւղը կազմել է տարագիր արդուինցիների համար ժամանակաւոր հանրակացարան և կազմակերպել է Տրապիզոնի շրջանում ցրուած հայերին ժողովելու գործը։

Մուտք է եղել. մնացորդ առ 1-ն յուն. 1915 թ. 405 ռ. 46 կ., անդամավճարներ 495 ռ., նուէրներ 1587 ռ. 90 կ., միօրեայ ժողովարարութիւն 2215 ռ. 9 կ., տոկոսիք 10 ռ., «Մի բաժակ թէյ» 3013 ռ. 49 կ., տուփերից 302 ռ. 34 կ., ընդամենը 8029 ռ. 28 կ. Իսկ ելք՝ «Մի բաժակ թէյի» կահաւորութիւն 773 ռ. 3 կ., ապաստարանի կահաւորում, ռոճիկ 735 ռ., դիւանական ծախս 49 ռ. 52 կ., նպաստ 3983 ռ. 51 կ., 5 և 5% ֆոնդ 294 ռ., զանազան նուէրներ 538 ռ. 35 կ., զինուորական հիւանդանոցներին 557 ռ., ընդամենը 6990 ռ. 41 կոպ., մնացորդ առ 1-ն յուն. 1916 թ. 1098 ռ. 87 կոպ.։

---

## Ք Ր Ո Ն Ի Կ Ո Ն

Կովկասեան գեմստուօյական խորհրդակցութիւնը մայիսի 7-ին վերջացրեց իր զբաղմունքները. այդ օրը, երեկոյեան, պալատում, Փոխարքայի նախահանութեամբ կայացաւ վերջին նիստը։ Այդ նիստում կարդացուեցին բոլոր հարցերի մասին գրաւոր, պատճառաբանուած կարծիքները մեծամասնութեան, այսինքն թուրք-վրացական խմբի, որին միացել էին պաշտօնական անդամներից շատերը և փոքրամասնութեան, որ, ինչպէս յայտնի է, կազմում էին հայերը և նրանց երբեմն միանում էին ոչ-պաշտօնեայ ռուսները։ Մեծամասնութիւնը կանգնած էր ազնուականների շահերի տեսակէտի վրայ, իսկ փոքրամասնութիւնը ժողովրդական լայն խաւերի շահերն էր պաշտպանում։

***

Պետրոգրադի Հայկական Համագումարի Նիստերը բացուեցին մայիսի 10-ին։ Համագումարը հրաւիրուել է գաղթականական խնդիրների համար, բայց Կովկասի համարեա բոլոր գլխաւոր հայկական ընկերութիւնները ու կոմիտէները, որոնք զբաղուած են գաղթականների գործով, չը մասնակցեցին Համագումարին, որովհետև Կազմակերպիչ Յանձնաժողովը չը յետաձգեց, որպէս զի ժամանակ և հնարաւորութիւն լինէր պատգամաւորներ ուղարկելու։

***

Քաղաքային Վարչութեան պատուէրով ստացուել է Թիֆլիսում բաւական մեծ քանակութեամբ ալիւր։

— Քաղաքում զգացւում է կենսական մթերքների մեծ պակասութիւն և թանգութիւն։

***

Երեքշաբթի օրը Թիֆլիսում վախճանուեց հանգուցեալ հայ դրամատուրգ Գ. Սունդուկեանցի աւագ դուստրը՝ Նինա Սունդուկեանցը, որը յայտնի էր իր հասարակական գործունէութեամբ՝ գլխաւորապէս մանկավարժական ասպարէզում։

***

Կ. Հ. Բ. Ընկերութեան Նախկին դպրոցական շրջիկ տեսուչ Վահան Տէր-Աբրահամեանը ատրճանակի գնդակներով սպանեց իր երիտասարդ կնոջը՝ փորձ արաւ սպանելու և իր մէկ տարեկան երեխային, բայց արձակուած վերջին գնդակը չը կպաւ երեխային։ Գ. Տէր-Աբրահամեանը վերին աստիճանի ջղային է և խանգոտ։ Դատաստանական քննիչի կարգադրութեամբ նա բանտարկուած է Մետեխում։

***

Ապրիլ ամսուայ ընթացքում Կ. Հ. Բ. Ընկ. գրադարանից բաց է թողնուած կարդալու համար հայերէն 2348 գիրք, ռուսերէն 1015 գիրք. ընդամենը 3363 կտոր գիրք։

Ընթերցարան են յաճախել 5823 հոգի, 3016 այր-մարդ և 2807 կին-մարդ։

***

«Մեղու» Աշխատանքի Տան տարեկան ընդհանուր ժողովը նշանակուած է մայիսի 18-ին

***

Ապրիլ ամսուայ ընթացքում Կ. Հ. Բ. Ընկերութեան հիւանդանոցում խնամուել են 1155 հիւանդ զինուորներ, այն է՝ օրական 38 հոգի։

***

1895 թուին ծնուած երիտասարդները ներկայանալու են Թիֆլիսի զինուորական առեանին առաջիկայ կիրակի, ամսիս 22 ին, առաւօտեան ժամը 9-ին։

***

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան 1915 թուի տեղեկագիրը պատրաստ է արդէն։ Ընկերութեան ընդհանուր ժողով նշանակուած է ամսիս 22-ին

***

Մայիսի վերջերին լրանում է հայոց մեծ երգիծաբան Յակոբ Պարոնեանի մահուան 25 ամեակը։

***

Նիւ-Եօրքում վախճանուել է հրէական լաւագոյն գրող Շոլոմ-Ալէյխէմը։

***

Պետրոգրադում լոյս տեսաւ ռուսերէն լեզուով «Ժողովածու հայոց գրականութեան» Մաքսիմ Գորկիի խմբագրութեամբ։

# Արտաքին տեսութիւն

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԻՆՏՐԻԳՆԵՐԸ ՇՎԵԴԻԱՅՈՒՄ

Համաշխարհային պատերազմի հենց առաջին օրերից գերմանական դիւանագիտութեան գործակալները մի յախուռն գործունէութիւն սկսեցին գրեթէ բոլոր չէզոք երկրներում՝ նրանց կենտրոնական պետութեանց կողմը շահելու դիտաւորութեամբ։ Բուլղարներին գրաւելուց և ռումիններին ու յոյներին բարեացակամ չէզոքութեան սահմանների մէջ գնելուց յետոյ՝ գերմանացիք ներկայումս իրենց գլխաւոր ջանքերը կենտրոնացրել են Շվեդիայում՝ այս չէզոք պետութիւնը ևս իրենց քաղաքական ցանցերի մէջ առնելու համար։

Մեզ թւում է, որ Գերմանիան այստեղ Շվեդիային անպատճառ պատերազմի քաշելու նպատակներ չի հետապնդում։ Աւելին կասենք.— Գերմանիայի համար բնաւ ձեռնտու չէ, որ Շվեդիան պատերազմ յայտարարի Ռուսաստանին. որովհետև այդ պատերազմից ստացուելիք ռազմական օգուտը շատ կասկածելի է, ի նկատի ունենալով Շվեդիայի զինուորական ուժերի փոքրութիւնը, իսկ վնասն ակներև է։ Այդ այն է, որ Շվեդիան նոյնպէս ծովապաշարման (բլոկադ) կենթարկուի, ինչպէս Գերմանիան, և այլ ևս հնարաւոր չի լինի նրա վրայով տանել այն մթերքները, որոնց պակասութիւնն այնքան զգալի է Գերմանիայում։ Շվեդիայում արծարծուող պրոպագանդը, մեր կարծիքով, նպատակ ունի միայն ուժեղ հակառուսական տրամադրութիւն և պատերազմի մշտական հնարաւորութիւն ստեղծել Շվեդիայում։ Այս դրութիւնը մի կողմից կը դիւրացնէր գերմանացիների առևտրական գործառնութիւններն այս երկրում, իսկ միւս կողմից՝ կստիպէր ռուսներին գերմանական ճակատից որոշ քանակութեամբ ռազմական ուժեր քաշել դէպի շվեդական սահմանը՝ Պետրոգրադը Թիկունքի անակընկալ յարձակումից ապահովելու համար։

Գերմանական պրոպագանդի ազդեցութեամբ շվեդացոց պահպանողականների շրջանում հենց պատերազմի սկզբից կազմուեց այսպէս կոչուած ակտիւիստների մի խմբակ, որ ամեն կերպ աշխատում էր գրգռել հասարակական կարծիքը ընդդէմ Ռուսաստանի։

Նախ և առաջ այս խմբակն աշխատում էր հրապուրել շվեդներին Ֆինլանդիան վերագրաւելու հեռանկարով։ Շվեդիայում դեռ կայ մի քաղաքական հոսանք, որ չի մոռանում այս նահանգների գրաւումը Ռուսաստանի կողմից։ Այս հոսանքն ուժեղացաւ մանաւանդ 1895—1905 թուերից, երբ ռուս ռէակցիան անընդհատ հարուածում էր ֆիններին՝ ցանկանալով նրանց ինքնավար և բարձր կուլտուրայի երկիրը վերածել մի սոսկ ռուսական նահանգի՝ ենթակայ ագէտ և ապիկար չինովնիկութեան կամայականութիւններին։ Սակայն 1905 թուի յեղափոխութիւնից յետոյ, երբ Ֆինլանդիան վերստացաւ իր նախկին իրաւունքները, ֆինլանդական խնդիրը կորցրեց իր այժմէութիւնը և միաժամանակ վերոյիշեալ հոսանքը մինչ այն աստիճան թուլացաւ, որ այս հողի վրայ ակտիւիստների պրոպագանդը Շվեդիայի հասարակական շրջաններում յաջողութիւն ունենալ չէր կարող։

Այնուհետև այս պրոպագանդը կառչեց մի այլ խնդրի։ Խրիմի պատերազմից յետոյ, երբ Բոսֆորի ու Դարդանէլի նեղուցները փակուեցին Ռուսաստանի առաջ, Շվեդիայում երկիւղ ծագեց, թէ ռուսները դէպի Ատլանդեան ովկիանոսն ազատ մուտք ունենալու համար ձգտում են գրաւել Նորվեգիայի հիւսիսային ափերը Նորվեգ նաւահանգստի հետ միասին, որով Շվեդ-Նորվեգիայի քաղաքական և առևտրական շահերը մեծապէս վտանգւում են։ Այս հողի վրայ ակտիւիստական պրոպագանդը բաւական յաջողութիւն ունեցաւ։ Սակայն երբ անցեալ տարուայ ընթացքում պարզուեց, որ մի կողմից նեղուցների հարցը դաշնակից պետութեանց մէջ վճռուած է յօգուտ Ռուսաստանի, իսկ միւս կողմից՝ Մուրմանեան երկաթուղու նոր գիծը, որ միացնում է Ռուսաստանի ներքին նահանգները Հիւսիսային և Ատլանդեան ովկիանոսներին, աւելորդ է դարձնում Նորվեգիայից հող կորզելու միտքը, ակտիւիստների պրոպագանդը նորից անյաջողութեան հանդիպեց։

Վերջին ամիսներս նրանք մի նոր միջոց են գտել իրենց գործն առաջ տանելու համար։ Այդ Ալանդեան կղզիների հարցն է։ Ըստ 1856 թ. Պարիզեան դաշնագրութեան և 1890 թուի պայմանագրութեան՝ Ռուսաստանը պարտաւորուել է Շվեդիայի արևելեան ափերին գտնուող այս կղզիները չամրացնել, որպէս զի նրանք յենակէտ չդառնան ռուսական ծովային ուժերի համար ընդդէմ Շվեդիայի։ Որպէս զի ապահովի Բալթիկ ծովի հիւսիսային մասերը և Ֆիննական նեղուցի մուտքը գերմանական ռազմանաւերից։ Թէև այս քայլը հակառակ է վերոյիշեալ դաշնագրերի տրամադրութեանը, բայց և այնպէս միջազգային իրաւունքի տեսակէտից Ռուսաստանը միանգամայն իրաւացի է, քանի որ այդ դաշնագրերն ստորագրող պետութիւնները կամ պատերազմի մէջ են Ռուսաստանի հետ և կամ, իբրև դաշնակից՝ համաձայն են նրա քայլին։ Երկու դէպքում էլ այդ դաշնագրերը կորցնում են իրենց իրաւական նշանակութիւնը։

Սակայն նրանց փաստական նշանակութիւնը մնում է Շուէդիայի համար, քանի որ նրանք այս երկրի չէզոքութիւնն ու անձեռնմխելիութիւնն ապահովելու համար են կեանքի կոչուել։ Այստեղից հասկանալի է, որ շվեդները իրաւունք ունեն Ալանդեան կղզիների ամրացման դէմ առարկութիւններ յարուցանել։ Այս առարկութիւնները ապրիլի 21-ին հրապարակ հանեց պարլամենտական հարցապնդման ձևով պատգամաւոր Ստեֆէնը, որ իր ակտիւիստական գործունէութեան համար վռնդուած է ընկերվարական կուսակցութիւնից։ Ռիկստագը 77 ձայնով ընդդէմ 52-ի ընդունեց այս հարցապնդումը, որով և արտայայտեց շվեդ հասարակութեան շահագրգռութիւնը առաջադրուած հարցի մէջ։ Ստեֆէնի այս յաջողութիւնը մեծ ցնծութիւն էր ակտիւիստների համար։ Նրանք կարծում էին, թէ կառավարութիւնը կամ հրաժարական պէտք է տայ և կամ հրաժարուի մինչև այժմ իր վարած չէզոք քաղաքականութիւնից։ Բայց, աւաղ, նրանց յոյսերին այս անգամ էլ չէր վիճակուած արդարանալ։ Ամսիս 4-ին

մանել Ֆրանսայի և Իտալիոյ միջև. Եգիպտոսի գրաւումով էլ նա թշնամութիւն սերմանեց Արևմտեան երկու Ազատական երկիրների՝ Անգլիոյ և Ֆրանսիայի միջև։

Եգիպտոսի գրաւումը անգլիացիների կողմից ողբալի հետևանքներ ունեցաւ նաև հայկական դատի համար։ Այդ ոչ միայն հիմունքից քանդեց եւրոպական համերգը (կոնսերտ) և պետութիւնների համերաշխ գործունէութիւնը, որ 1815-ի Վիէննայի վեհաժողովից ի վեր կազմել էր Եւրոպայի միջազգային իրաւակարգը, այլ և թոյն խառնեց մեծ պետութիւնների de facto (իրապէս) նրանց հովանաւորութեան տակ գտնուած տէրութիւնների յարաբերութիւնների միջև։ Մինչև այդ ժամանակ մեծ պետութիւնները աւելի նուազ համերաշխութեամբ գործակցել էին եւրոպական և համաշխարհային հարցերի շուրջ։ Վիէննայի (1815), Պարիզի (1856), Բեռլինի (1878) և այլ վեհաժողովներով (կոնգրէս) նրանք լուծել էին դժուարին կնճիռներ և կարողացել էին մի կերպ modus vivendi գտնել թէ իրենց յարաբերութիւնների և թէ իրենց և կէս-անկախ և վասալ տէրութիւնների փոխյարաբերութիւնների միջև։ Իսկ Եգիպտոսի գրաւումը հիմք դրեց այն հսկայական պառակտման, որ աստիճանաբար ձևակերպեց եւրոպական երկու խմբակցութիւնների գոյութիւնը և ուր աստիճանական զարգացումով յանգեց գերմանօ-աւստրօ-իտալական դաշնակցութեան և ֆրանկօ-ռուս-անգլիական համաձայնութեան։

Եւ երբ եւրոպական համերգին յաջորդում էր ոյժերի հաւասարակշռութեան վարդապետութիւնը, այդ ի հարկէ նշանակում էր փոքր ու ճնշուած ազգերի տառապանքների երկարաձգումը։ Թիւրքիան իբրև գերիշխան տէրութիւն՝ շատ լրջօրէն վիրաւորուեց Եգիպտոսի գրաւումից և այն ժամանակից ի վեր աւելի կատղեց հանդէպ իր հպատակ քրիստոնեաներին։ 1882-ից սկըսած Աբդիւլ Համիդը վճռապէս դարձաւ անգլիատեաց, մինչդեռ մինչև այդ ժամանակ Անգլիան Թիւրքերի կողմից նկատուել էր իբրև իրենց անշահախնդիր և ուժեղ բարեկամ։ Գերմանիան յաջորդեց Անգլիային և ձեռք բերաւ այն դիրքը, որ տարիներով և դարերով Անգլիան գրաւել էր Պոլսում, և շահագործեց իր նոր ազդեցութիւնը քաջալերելով Եըլդըզի կամարիլայի բռնակալութիւնը։ Աբդիւլ Համիդը կազմակերպեց հայկական կոտորածներ, որովհետև նա հայերին նկատում էր իբրև Անգլիայի առանձին պաշտպանեալներ *)։ «1882-ին դեռ նա այն խելագար բռնակալը չէր, ինչ որ եղաւ վերջ.... Եգիպտոսի գրաւման ուղղակի հետևանքը այն եղաւ, որ հայերի, կրետացիների և մակեդոնացիների դէմ ձեռնարկուած կեղեքումների առթիւ անգլիական բոլոր բողոքները պաշտօնական Թիւրքիայի կողմից նկատւում էին իբրև կայսերական փառասիրութիւններով տարուած մի թշնամու շահախնդրական միջամտութիւններ»։ Լորդ Սոլզբըրիի ակնարկած status quo-ի պահպանման աղէտալի հետևանքների և կիսատահմանուած դրդապատճառներին դեռ կը վերադառնանք։

*Արշակ Սաֆրաստեան*

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏՐԱՊԻԶՈՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

(Le Figaro № 111)

—

Այս քաջարի և անբախտ Հայաստանը ազատ է այսօր, կամ քիչ բան է մնում, որ ազատ համարուի։

Երբ կարդինալ Մերսիէն դատախօսում է. «Մի ասէք թշուառ Բելգիա, այլ ասացէք «Մեծ և պանծալի Բելգիա...» նա ուղղում է խօսքը իր սիրելի ժողովրդին. բայց մենք, մեր սեփական վիշտն ունենալուց զատ, ուղղում ենք մեր խօսքը բոլոր խաչուած ազգութիւններին՝—Սերբիային, Չերնոգորիային, Լեհաստանին և Հայաստանին, որովհետև նրանք զրկել են մեծ պետութիւնների անծայր տենչանքը և դժբախտութիւն են ունեցել գտնուելու նրանց ճանապարհի վրայ։ Արիւնռուշտ Սուլթանի ստեղծած ջարդերից յետոյ, որի դէմ չը բողոքեց ազատասիրութեամբ դիմակաւորուած երիտասարդ թիւրքերից ոչ մէկը,—հայերը կրել են սիստեմատիկ ջարդեր քիւրդերից և տաճիկներից, գլխաւորապէս անցեալ տարի գարնանը և ամառը, ջարդեր, որից ընկան 800,000—900,000 Հայ,—և այս անգամ ոչ միայն ցեղական քէնի ատելութիւնից, այլ գերմանական իղձերին բաւականութիւն տալու համար։

Եւ սրի քաշել մի ամբողջ ժողովուրդ, որպէս զի ապագային Համբուրգ-Բաղդադի գերիշխանութիւնը ապահովուի Փոքր-Ասիայում,—այդ գուցէ ամենամեծ ոճիրն է պատմութեան։

* * *

Տրապիզոնում 15,000 հայ էր բնակւում։ Բոլորին, առանց բացառութեան, հրացանազարկ արին, կախեցին, խեղդեցին, դատապարտեցին անդարձ աքսորի։ Նրանց սրտաճմլիկ ընթացքը լեռներով, անապատներով, դէպի իրենց կորստեան անյայտ վայրերը այնքան զարհուրելի էր, որ մի հիւանդապահ կին շատ իրաւացի բացականչել է. «երանի՜ կոտորածներին» *)։

Տրապիզոնի Իտալական հիւպատոսը գրում է. «Եթէ իմանային այն բոլորը, ինչ ես ինքս եմ տեսել իմ սեփական աչքերով, լսել եմ ականջներովս, ամբողջ քրիստոնեայ աշխարհը կը դարմանար, որ այստեղ են հաւաքուել բոլոր մարդակերներն ու գիշատիչ գազանները։ Կոտորել աստիճանաբար մի ամբողջ ժողովուրդ սրով ու գնդակով, ջրով ու կրակով, քաղցով ու պղծումով,—այդ մի գարշագործութիւն է, որը որքան անհաւատալի, որքան էլ աներևակայելի լինի նոյնիսկ հիւանդոտ ուղեղներին, այնուամենայնիւ մնում է զուտ իրականութիւն, անհերքելի իրականութիւն»։

Լինենք արդարադատ և ասենք, որ գտնուեց վերջապէս մի գերմանացի, մի կին, որ բարձրացրեց իր ձայնը։ Նա գրեց Մարաշից «Sonnenaufgang» լրագրին. «Ո՜, եթէ մենք կարողանայինք ասել այն, ինչ տեսնում ենք»։ Բայց գերմանական գրաքննութիւնն շտապեց խեղդել այդ բողոքի ձայնը, որովհետև, ինչպէս ամերիկացի Հերբերտ Ադամս Գիբոնս է վկայում*), գերմանացիք և միայն գերմանացիք էին հրաւիրուած ծափահարելու Հայկական ջարդերին»։

Ուրեմն ճիշտ է, ինչպէս մի երիտասարդ-թուրք նկատել էր նոյն ամերիկացուն, որ «Հայկական հարցից ազատուելու համար՝ պէտք է ընդմիշտ ազատուել հայերից»։

* * *

Բաւական էր Վանգենհէյմի, գերմանական Պոլսոյ դեսպանի, մի խօսքը, որպէս զի Հայոց ջարդերը դադար առնէին։ Բայց նա հրաման ունէր իր կայսրից, իր արիւնկզակ Սուլթանից, և նա պատասխանում էր Միացեալ Նահանգների բոլոր ջանքերին, թէ «Գերմանիան չէ կարող միջամտել Թիւրքիայի ներքին գործերին»։

Միւս կողմից էլ Թիւրքիայի դեսպանը Վաշինգտոնում, և նրա

---

*) „The War of stell and gold"-ից H. N. Brailsford. էջ 109. 1914։

*) Emile Doumergue l'Arménie, լոյս տեսած «Foi et Vie» ամսաթերթ. ապր. 1916 թ.

*) Les Derniers Massacres d'Arménie, p. 81.

ռուսից էլ գերմանական Բերնշդորֆը պնդում էին, թէ «մահուան ենթարկած բոլոր Հայերը խռովարարներ են եղել»։

Խռովարարներ են եղել նոյնպէս կանայք և աղջկերք, մորթոտուած, առևանգուած, վաճառուած հարեմներում ինչպէս կենդանիներ։

Հայաստանն էս, ինչպէս Բելգիան, Սերբիան և Լեհաստանը, չէ մեռել։ Մեծ Իշխանի զօրքի մուտքը Տրապիզոն ազդանշանն է նահատակուած ազգերի վերականգնման։

---

## «ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ» ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ՋԱՐԴԵՐԸ

(Figaro № 111)

«Արևելեան Աշխատանք» կրօնական Միութեան փոխ-վարիչ աբբայ Լամիէ Ֆրիդրիխը Մասոնի նախագահութեամբ կատարեց Պարիզում մի դասախօսութիւն Հայկական ջարդերի առթիւ։

«Փոքր-Ասիայում—ասաց աբբայ Լամիէ,—Թիւրքերից կոտորած երեխաները, անպատուած և վաճառուած կիները, կենդանի թաղած ծերերը, տուել են յաղթութեան գործին այն, ինչ տալիս են կռուի դաշտում մեր զինուորները։ Այնտեղ, Փոքր-Ասիայում, ընկել են մի միլիոն Հայեր։ Կենդանի մնացածները Ռուսաստանում և այլ տեղեր ցանկանում են տեսնել վերջնական այն յաղթանակը, որի համար իւրայինները՝ մեռնելուց առաջ այնքան տանջուել են։ Նրանք դրել են իրենց յոյսը Ֆրանսիայի վրայ»։

«Արևելեան Աշխատանքը» բացել է հանգանակութիւն յօգուտ փախստական Հայերի։

---

## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՄԱՐՄԻՆ ՇՈՏԼԱՆԴԻԱՅՈՒՄ

Շոտլանդիոյ Էբերդին քաղաքում, որ տաճկահայոց 1894—96 թուականի կոտորածներին առատ նուէրներ էր ուղարկել, անտարբեր չմնաց հայոց այժմեան ահեղի, անլուր և սարսուռ ազդող կոտորածներին։ Էբերդինում մի մեծ ժողով է եղել, ուր ճառախօսութիւններ են եղել ի նպաստ տաճկահայոց դատի։

Ժողովին մասնակցել են բազմաթիւ ականաւոր անձինք, իսկ բացականներն ուղարկել են իրենց լուման և համակրութիւն յայտնել գործին։

Ճառախօսութիւններից յետոյ լորդ Պրովոստ Մէյթլանդի առաջարկութեամբ կազմուել է նպաստի յանձնախումբ հետևեալ անձերից՝

Լորդ Պրովոստ Թագարդ, Բէյլի Ֆիդէս, վերատեսուչ սըր Ջորջ Սմիտ, ուսուցչապետ Սոուքըր, նահանգապետական դատաւոր Լէյնգ, սըր Դէյվիդ Ստուարտ, սըր Ջան-Ֆլէմինգ, միստըր Ջ. Մ. Կուք, միստըր Վ. Մկդանըլդ (Օկանիի), խորհրդական Ռ. Ուիլսըն, ուսուցիչ Գառւան ու Դէյնս, դոքտոր Դընքան, վերապատուելիներ Մաքսուէլ Ռայտ, Ս. Հ. Թոդդ, Ռ. Սէմպըլ, Դ. Մաքֆարլան, Ս. Միլն, մասըր Ա. Ֆինդլէյ, իսկ մասըր Ջէյմս Փայպըր ընտրուեցաւ գանձապահ և քարտուղար։ Ժողովը թողեց մեծ տպաւորութիւն և համակրութեամբ ողջունուեցաւ և շնորհակալութիւն յայտնուեցաւ կազմակերպիչ մարմնին և խօսողներուն («The Aberd. Free Press»)։

---

# Գրականութիւն

## ՍԻՐՏ

*Նուէր դարձեալ Սեպուհին.*

Հրամայուած էր. «Տղերք, կանանց ու երեխաներին խնայեցէք։ Անզէն տղամարդկանց էլ մի խփէք»։ Թիմարցի Աւետիսը լսել էր այդ հրաման-յորդորը և յաճախ մտմտում էր ինքն իրան. «Ղորդ կ'ասեն, ինչդ կարելի ի կնիկ ճիժ սպանել»։ Խորհում էր, թախծում ու մաքով սկսում էր որոնել իր կնոջն ու երեխաներին, որոնք մնացել էին Երկրում՝ իրանից չորս տարի բաժանուած։

Օտարութեան մէջ՝ երեխաների կարօտն էր զգացել միշտ. «մ՜խ...» Նամակներ էր գրել իր անվարժ ծանրաշարժ ձեռքով. «սիրէկլի եվ աննմօրնէկլի այմուսինը Աղաւնոյին.» յոյսեր, խոստումներ էր տուել, թէ շուտով կըգայ։

Երբ պատերազմը յայտարարուեց, Աւետիսը մտաւ կամաւորական խմբի մէջ։ Ուրախ էր ու ոգեւորուած. Երկի՜ր էր գընում՝ մօտինը ուսին, ազատ, անարգել...Օրեր էր համրում և համբերութիւն հաւաքում,

Խումբը արշաւեց։ «Տղերք,—նորից յորդորեց խմբապետը. կանանց ու երեխաներին չդիպչէք,» և Աւետիսն էլ նորից մըտմտաց և դարձաւ ընկերոջը. «Քուրդ խօ չենք, Մուքայէլ»։

—Դէ, իհարկէ,—պատասխանեց ղազախեցի Մուքայէլը, որ սերտ բարեկամացել էր Աւետիսի հետ.—լուսաւորչական (լուսաւորուած) ժողովուրդ ենք, քրդի թա՞յ ենք բա. մենք Վարդան զօրաւոր (զօրավար) ենք ունեցել քէօհնա վախտին, համ էլ կաթղիկոս ունենք...»

Աւետիսը ժպտաց ու նայեց հեռուն։

—

Գարունը սկսել էր. լեռների ձիւնը հալւում՝ պղտոր-պըղտոր հոսում էր ցած.—ջուրը տարածուել էր դաշտերին։ Արեւը վառւում էր ամեն օր՝ պայծառ ու երկար։ Բլուրներն արդէն սքողուել էին կանաչաւուն շղարշներով։

Խումբը առաջ էր անցնում։ Ձոր, հովիտ, քարքարոտ, լեռներ, դարձեալ հովիտներ, դարձեալ սար ու ձոր... Եւ մի օր, առաւօտեան կանուխ, նոսր մշուշի միջից՝ ծովը երեւաց։

Հրճուանք դուրս ցայտեց Աւետիսի սրտից. «Ծո՜վ, մեր Վանայ ծով... Ղուրբան էլնիմ քէ, ծո՜վ»։ Ուրախութիւնից ցնցուած, քաշեց ձիու սանձն այնքան պինդ, որ ձին յետ ընկրկեց և թափ տուեց գլուխը փանչալով։ Աւետիսը քրքջաց բարձրաձայն.

—Արա, դէ ջուր ա էլի՛,—զարմացաւ Մուքայէլը,—էդքան խի՞ ես զժւում»։

—«Էն սար չէ, էն միւս սարի յետին ի մեր գեղ, ծովու քով։ Կըտեսնա՞ս էն սար»։ Աւետիսը ձեռքը մեկնեց դէպի մի լեռնաշղթայ, որը ձիւնոտ գագաթներով ձգւում էր հիւսիս-արեւելքից հարաւ-արեւմուտք, և ծիծաղեց. «Մուքայէլ... իմ սիրտ կըտփայ»։

—

Այդ օրը կռիւ եղաւ՝ մի լեռան լանջին։

Տեղը քարքարոտ էր՝ ժայռերով սփռուած։ Քրդեր ու տաճիկներ հարիւրներով ցրիւ էին անցել ժայռերի մէջ՝ հազիւ էին երեւում, և հենց որ տղաները մօտեցան մի քիչ՝ նրանք ուժեղ կրակ բացին։ Հրամանատարը կարգադրեց առաջ գնալ և աւելացրեց. «Զգո՜յշ շարժուեցէք, շղթան նոսր բռնէք»։

Զգուշութիւնն անհրաժեշտ էր, որովհետև տղաների անցնելիք տարածութեան վրայ, մինչև ժայռերի սահմանը, չկար ոչ մի յարմար դիրք՝ գնդակներից վահանուելու համար։ Տեղը բաց էր, ցածր, թշնամու կրակին անմիջապէս ենթակայ... բայց Աւետիսը նետուեց առաջ՝ սրարշաւ սարն ի վեր, դէպի ժայռերը, գնդակների կարկտի միջով։

—«Արա՜, արա՜, արա՜...»—յետևից գոռաց Մուքայէլը՝ վախեցած, որ Աւետիսը կըզարկուի խելօյն, և բարկացած նրա յանդգնութեան վրայ. «դէ գնա սպանուի՛ր... հա՜խդ կըլի»։ Շունչը պահեց և ողջ ուշադրութիւն կարելով նայեց. լարուեց ու լարուեց։ Աւետիսը, սուրը հանած, ձին քշեց՝ հասաւ առաջին ժայռին, յետեն անցաւ... Զարկեց սուրը, մէկ-երկու-երեք-չորս... անսպասելի ճարպկութեամբ ու թափով, որ Մուքայէլը բացականչեց՝ «բա իմ գլխին լաչա՜կ ա որ...» և ինքն էլ թռաւ՝ Աւետիսի կողմը սլացաւ։ Նրան հետևեցին երկու հոգի, ապա հինգը, դարձեալ չորսը, հինգը...

Թշնամին դուրս մղուեց ժայռուտի շրջանից և ստիպուած եղաւ քաշուել ուրիշ կողմ։

—«Էս էլ ութը»—գոհ-գոհ բացականչեց Մուքայէլը կռուից յետոյ (որը թւով ութերորդն էր արշաւանքի սկզբից) և շտապեց գտնել Աւետիսին... «Արա, Աւետիս, գժի պէս էն ճէր աղաքն ընգար՝ գուլլէքի բռէխը։ Ախր...» Չվերջացրեց խօսքը՝ Թափ տուեց գլուխը, մտերմաբար գրկեց Աւետիսին, պինդ համբուրուեց հետը. «ծխա՛յ, հընգեր»։

Աւետիսը ծիծաղեց։ Բայց մի ժամ յետոյ տխրեց յանկարծ։

Ուրիշ շատերն էլ տխրեցին։ Տեղեկութիւն հասաւ, թէ ծովափնեայ հայ գիւղերում կոտորած է եղել. «այնտեղ հիմա ամայութիւն է տիրում՝ մարդ չի մնացել»։

Մուքայէլը զգաց Աւետիսի հոգսը և յօնքերը հաւաքեց։ «Աւետիս ջա՛ն, վախիլ մի, կնիկդ ու ըրեխէրքըդ սաղ-սալամաթ են»։

Աւետիսը մտացրաղ, լուռ նայեց Մուքայէլին՝ ուզեց հաւատալ. մտիկ տուեց ծովին, որը հիմա փռուել էր աւելի լայն ու գեղեցկացել,—և հաւատաց. «Հա, ջանմ, սկի բան էլած չի ըլնի, քուրդ չէր կրնար էնտեղ էլնել՝ մեր գեղ պանցը տեղ ի, մեր ճիժեր զօչաղ են»։ Մուքայէլի ճակատը բացուեց։

—Դէ մի թող ըրեխէրքէդ խաթրին դիբած ըլեն աջ՛ուղը կհանեմ. որդի որ քուրդ տեսնեմ ընդուց դէնը՝ կտամ կսպանեմ... սուրբ Գէորգը վկայ»։

—Թո՛ղ, ջանըմ, թո՛ղ. էդպէս բան մի ասի—վրայ բերեց Աւետիսը։ Բռնադատեց ինքզինքը, թօթափեց տխուր մտքերը և ծիծաղ արձակեց՝ կարճ, կոկորդային։ Իսկ Մուքայէլը ծիծաղեց երկար, թոքերի խորքից, գիլ ու փշուր-փշուր...

—«Կռիւը լա՛ւ բան ա, սիրտ ա հովացնում»։

—

Նոյն օրը ձիաւորներ ուղարկուեցին շրջակայքը հետախուզելու համար։

Երեկոյեան դէմ վերադարձան։ Թշնամի այլևս չէր երևացել տասնուհինգ-քսան վերստի վրայ. սակայն «ճանապարհին, ծովի ուղղութեամբ, հայերի դիակներ են թափուած»։

Տղաները մռայլուեցին։ Որոտաց բարկութեամբ մշեցի Յունոն. «Եղա՛ւ։ Մեզիկ հըրաման կիտան՝ քրդու կնիկ, քրդու տղայ մի զարկէք, կսեն... Եղա՛ւ Քըրիստոս գինայ, հըրաման չեմ ճանչնայ»։

—Թո՛ղ...—ուզեց Աւետիսը հանգստացնել նրան, բայց զգաց, որ ինքն է անհանգստանում. մի կասկած սկսել էլ եռ գալ ներսը։

—«Թո՛ղ կըսես, համա քըդեր գիմ խէր խեխտած ա՛ն, գիմ ախպէր սպանած ա՛ն, գիմ ախպօր կնիկ... գիմ... գիմ»...

Ցասում պոռթկաց Յունոյի աչքերից. կոկորդը լցուեց դառը արտմութեամբ։ Աւետիսը լռեց, և լռութեան մէջ փորձեց հեռու կենալ անախորժ մտքերից, որոնք յամառ կերպով հաւաքւում էին գլխին... Հրացանը քանդեց, մաքրեց, կարգի բերեց. փամփուշտները համրեց. պառկելու տեղ պատրաստեց. մի թաս թէյ խմեց։ Մտածեց, մտածեց՝ եափընջին քաշեց գլխին ու թեք ընկաւ. քնեց, երբ նոր էր միայն մթնել։

—

Առաւօտ կանուխ խումբը շարունակեց առաջխաղացութիւնը։

Մուքայէլը, որ բնաւ ձայն չէր հանել, ճանապարհին փորձեց խօսեցնել Աւետիսին. «Էս ա մօզանում ենք քու ասած սարերին. քէփդ քեօք պահի... էն երևացող դիք սարը չի բա քու ասածը»...

Աւետիսը չըպատասխանեց. լուռ, արտաքուստ անշշուկ, նա ամօթ զգում էր շտապելու ձգտումը, որ մտրակում-խթանում էր անդադար՝ անորոշութեան երկիւղից ու հոգեսպառ կասկածից... Շուտ, վա՛խ, շո՛ւտ հասնէր գիւղը։ Կինը, երեխաները...

Դիակ երևաց ճամբից դուրս, փոսի մէջ՝ երեսնիվայր ձգուած. մերկ էր, ողջ ուռել, կապտել—սևացել էր։

Երկրորդն երևաց։ Յետոյ՝ դարձեա՛լ մէկը... Յունոն մթնեց։ Զայրոյթի ու վրէժի զգացմունք էր՝ խորը խմորուեց այդ մթութեան ու լռութեան մէջ։ Յունոն հայեացքը ծանր գամում էր այս կամ այն սարի լանջին, ստորոտին, ուր որ մի գիւղ կերևար. և գիւղը նկատելով, նա տալիս էր միևնոյն հարցը, միևնոյն անհամբոյր, դաւադիր ձայնով. «Ծօ տղայ, ինա գեղ հայո՞ւ գեղ է թէ չէ քրդու»։

...Համբերանքը սպառած, Աւետիսը մէկէն մտրակեց ձին և դուրս եկաւ շարքից, որ առաջ անցնի... Բայց «Աւետիս, տեղդ!» —հրամայեց հարիւրապետը և նա շարքը մտաւ նորից՝ յուսախաբ ու կոտրուած։

«Պարոն հարիւրապետ,—ինքն իրան մռմռաց Մուքայէլը,— իմանում չես, Աւետիսն շտապում ա ախր, ըրեխէրք ունի». և կրկին դիակը տեսնելով՝ բացականչեց. «Տունդ քանդուի, քո՛ւրդ. մարդ բա էս զդար էլ անխի՞ղճ կըլի»։

—

Ձիւնոտ լեռնաշղթայի երկայնքով քրդական գիւղեր կային։ Պէտք էր գրաւել այդ գիւղերը, որպէսզի կարելի դառնար՝ ձորը մտնել, ապա ձորի միջով անցնել լեռան միւս կողմը, ուր արդէն հայ գիւղերի շրջանն էր սկսուելու ծովի ափերով։

Արագ ու ճարպկօրէն, տղաները շրջապատեցին առաջին գիւղը, որ ամենից մեծն էր համարւում, և կռւով մտան ներս։

Կռուող քրդերը անձնատուր եղան։ Ոչ կռուողները, բացառապէս ծերեր, կանայք, երեխաներ՝ ճիչով, սուգով, վայիւններով հաւաքուեցին մզկիթի մէջ՝ համոզուած, որ պիտի կոտորուեն։ Նրանք պատրաստուել էին փախչել, բայց չէին հասել։

Խմբապետն անձամբ յայտնեց նրանց ամենաքին, որ հանգիստ մնան՝ չվախենան. և կարգադրեց, որ մզկիթի շուրջը պահակներ դրուեն անյապաղ։ Իրարանցումը խաղաղուեց գիւղի մէջ։

Մթնեց։ Ձորը խաւար եղաւ, լեռան գլխից պաղ քամի իջաւ. երկուսն էլ միացան, տարածուեցին... Ցուրտ, վատ գիշեր եղաւ Աւետիսի համար, որը, իրա հերթին, պահակ կանգնեց մզկիթի դրան առաջ։

—Հարիւր յիսուն երկու կին, վաթսուն հինգ ծեր, երկու հարիւր քառասուն հինգ երեխայ,—յայտնեց նախորդ պահակը ի գիտութիւն, տեղն Աւետիսին տալով։ Տուեց և բանալին։

...Մտքերը եկան դանդաղ շարքով, ընդհատ-ընդհատ անցան-գնացին, նորից յետ եկան, խառնուեցին իրար, նորից ցրիւ ընկան։ Մակընթացութիւն ու տեղատուութիւն սկսուեց. և ամեն անգամ, երբ միտք-ալիքները առաջանում էին ու բարձրանում, նրանց մէջ ողողւում, ծածկւում էր մի բան, որը ափի վրայ էր կծկուել. և ապա, երբ ջուրը յետ էր գնում, այդ բանը յայտնւում էր կրկին ու հեռւում... Երեխաներն էին ու կինը, որ թաղնւում-երևում, թաղնւում-երևում էին շարունակ՝ մթութեան մէջ, ջրի մէջ, ծովի մէջ...

—Ո՞վ ի...—բարձր ձայն տուեց Աւետիսը՝ ոտնաձայնը լսելով յանկարծ և արագ քաշեց-պատրաստեց հրացանի փականը։

—Ես իմ...—պատասխանեց մէկը խաւարի միջից։

—Դո՛ւն ո՞վ իս։

—Շո՛ւն եմ, գէլ եմ, գազա՛ն եմ...

Յունոն էր, մօտեցաւ։ Դաւադրի ձայնը աւելի էր գզուել ու կոշտացել։ Մօտեցաւ ու կանգնեց Աւետիսի առաջ լուռ, մռայլ, վճռական։ Աւետիսը իսկոյն հասկացաւ նրա միտքը և մերժեց մզկիթի դուռը բանալ.

—«Թող, ջանըմ, թող»։

Յունոն նայեց՝ զարմացաւ, յետոյ զայրացաւ, պահանջեց, սպառնաց, հայհոյեց. «Իդա եղաւ բա՞ն... դուն հայ չե՞ս...»

Աւետիսը մնաց անդրդուելի. և Յունոն ի վերջոյ հեռացաւ ձեռնունայն՝ սուզուեց խաւարի մէջ։

Ներսը, մզկիթում, թեթև աղմուկ էր սկսել Յունոյի ձայնից։ Աւետիսը ականջ դրեց... Դող սահեց յանկարծ նրա մարմնով՝ սուր ու երկարատև։ Գիշերային ցո՛ւրտն էր, թէ՞ այն սառնաշունչ միտքը, որ յախուռն զարկուեց ուղեղին։

Հոգու մէջ կուտակուած կասկածից ու մայլ նախազգացումից՝ մի անքոյ փրթաւ, յետոյ երկրորդը…

—

Վերջապէս գիւղը երեւաց։

Հրամանատարի թոյլտուութեամբ, Աւետիսը, որ տանտապետ էր նշանակուել, վերցրեց իր տղաներին, Մուքայէլի հետ, և առաջ անցաւ։ Բայց ուրախ չէր. արդէն հեռուից տեսաւ, որ գիւղում կեանք չկար։

Խումբն էլ կամաց-կամաց հասաւ տեղ՝ մօտ մի ժամուայ ճանապարհ կտրելով։ Գիւղը բարձր բլուրի վրայ էր, հիւսիսային ու արեւելեան կողմերից ժայռերով եզերուած. դէպի արեւմուտք տարածուել էր ծովը։

Թշնամին աւերել էր գիւղը։ Շատ տներ այրուած էին, կըտուրներն ու պատերը փլած։ Եկեղեցին տակն ու վրայ էր արուել. բեմը քանդուած էր հիմքից. յատակի քարերը հանուել-ձգուել էին դէս ու դէն… Դուրսը, զանգակատան պատի մօտ, արեւի տակ, քահանայի գլուխն էր ընկած։

Գիւղի մէջ՝ փողոցներում, տների շէմքին, ներսը, կտուրների վրայ՝ գլուխներ, գլուխներ… Գարշահոտութիւնից անկարելի էր մնալ գիւղում, ոչ էլ ջուրը՝ մօտի բաց ղաշտում. ուստի խումբն անցաւ հարեւան քրդական մի գիւղ, որի բնակիչները փախել էին արդէն, և բանակեց այնտեղ։

Տղաները վրաններ զարկին, կրակ վառեցին, որ իրանց համար թէյ ու կերակուր պատրաստեն։

Օրը զուարթ էր, արեւը տաք։ Երկինքը՝ ողջ վճիտ. գետինը՝ կանաչկալած։ Ծովը՝ կապոյտ-կապոյտ. ալիքները յեղեղուն ու խաղուն։

— —

Աւետիսը ոչ մի խօսք չասաց ամբողջ օրուայ ընթացքում՝ ոչ ձայն, ոչ հոգւոց, ոչ մի բան. պապանձուել էր, լռութեամբ տոգորուել։ Մերթ նստում, մերթ քայլում, մերթ պառկում էր։ Յաճախ նայում էր ծովին. նայեց երկար ու յամառ մթնելու ժամին, երբ ծովն աստիճանաբար դժգունեց, յամրացաւ, լուծուեց խաւար տարածութեան մէջ…

Մուքայէլը մօտ գնաց, անվստահ նստեց քովը։ Անհանգիստ ու անդադար՝ աչքերով հետեւել էր նրան, առանց սիրտ անելու, որ հետը խօսի։ «Ինչ սանձ ախր, ի՛նչ սանձ ախր»…

— «Ոչ ըրեխէքը կային, ոչ էլ կնիկը»—պատմել էր նա տղաներին ու իրանց հարիւրապետին.—«տունը իր տեղումն էր, քրդերը քանդել չէին։ Շատ ման էկանք մինչի ձեր գալը, դէս մօտիկ տուինք, դէն մօտիկ տուինք, ոչ կնգայ մէյիտը քթանք, ոչ ըրեխէքքինը։ Քանի սաէք մէյիտներ ենք չուռումու տուել, հանցու որ տեսանք՝ ո՞վ ա, ո՞ւմ կնիկն ա, եա ինչ ըրէխայ ա… Էնէնց ա ըրեւում, որ էն անիծածները եա հետները տարած կըլեն, թէ ինչ ա թուրքացնեն. եա չէ ու՝ կըտորել, մէյիտները ծովն են ածել…»

Եւ Աւետիսի կողքին նստելով, Մուքայէլը, իրան զսպելու այլեւս անկարող, փաթմթուեց ընկերոջը և հեկեկաց… «Ուշացանք, Աւետիս, ուշացանք։ Ղուշ դառած պտէինք՝ թռչէինք, որ հասնէինք»։

Յետոյ, արցունքից թեթեւացած, բռունցքը զարկեց գետնին ու բացականչեց. «Դէ որ բանը էդպէս ա՝ լաւ… Ըստուց դէնը տեսնենք թէ ո՞ւմ մէյիտը շատ կըլի՝ հայինը, թէ՞ քրդինը… էլ ցեղամնիցս չեմ անի»։

Աւետիսը չլսեց. նրա ուշքը վերթերկուած էր խաղը սարսափներից, որ շարունակ գալիս ծանրանում էին հոգու վրայ… ծովի կողմիցն էին գալիս…

— «Վա՜խ մեր ծով… Վանայ ծով…»—մղկտաց Աւետիսը և երեսը պինդ ծածկեց ձեռքերով։

—

Հինգ օր դադար եղաւ, որից յետոյ կռիւները վերսկսուեցին։ Խումբը շարունակեց առաջ գնալ և այն վիճակը, որ տղաները կրել էին գիւղերից ու աւերմունքից, մեղմացաւ՝ նոր յաղթութիւնների ազդեցութեան տակ։

Յունոյի դէմքը պարզուեց հետզհետէ։ Նա դարձել էր արագաշարժ, ճարպիկ ու ձեռներէց։ Այնքան էր միայն սպասում, որ յարձակուելու հրամանը տրուի, իսկ այնուհետեւ [illegible] իրան գործի էր անցնում. կորչում էր կռուի մխորի մէջ և հազիւ վերջը, երբ կռիւը աւարտուած-պրծած էր լինում, նա նո՛ր միայն յայտնւում-գալիս էր։ «Հիմա ես գինամ»—ասում էր նա ամեն անգամ՝ հանգիստ ու ինքնավստահ։

Ամենավտանգաւոր ու հեռու տեղերն էր յանձն առնում գնալու։ Առաջին իսկ կռւում չորս քիւրդ ձիաւոր զարկեց. իւրաքանչիւր նոր կռուին էլ զարմանալի քաջութիւններ գործեց։ Ընկերները հիացան, ակնածեցին. բայց հրամանատարը չորրորդ կռուի սկզբից կանչեց նրան և պատուիրեց. «Յունօ, դու այլեւս առաջ չվազես. միշտ հարիւրապետիդ հետն եղիր»։

Կտրուկ էր պատուէրը, պէտք էր ենթարկուել։ Հակառակելու անկարող, Յունօն հեռացաւ դժկամ, վշտացած ու զայրացած։ Նրա համար պարզ էր պատուէրի իմաստը. նա հասկացաւ, թէ ինչն էր արգելւում այդ պատուէրով. բայց չհասկացաւ, և չէր էլ ուզում հասկանալ, թէ ինչի համար էին արգելում։

—Աւետիս, դարձաւ խմբապետը Աւետիսին, որը հարիւրապետի կարգադրութեամբ՝ իր տասնեակով եկել կանգնել էր, հրամանի էր սպասում.—տղաներիդ վերցրու, իջիր ձորը լեռան այս կողմի լանջից. կը փակես ձորի բերանը, որ թշնամին չանցնի։ Կաց այնտեղ՝ մինչեւ նոր բան կարգադրեմ»։

Աւետիսը գնաց։

—

Ձորը նեղ էր՝ քարափներով սղմուած։ Գետակը, որ հոսում էր միջով, հուպ էր եկել ժայռերի արանքում և, սեւ ճնչակտուր, հեծեծ աղմկում էր, ցնցուղ-ցնցուղ գալարւում։

Ճանապարհը վատ էր. տղաները ստիպուած էին անդադար գետափերն անցնել այփից այփ։ Վտանգի մասին հոգ չէին տանում, որովհետեւ ձորի երկու կողմերի լեռնակատարներին կանխապէս մարդիկ էին դրուած՝ դիտելու և հսկելու համար թշնամու շարժումներին։

Լեռները, ձորը, գետակը, քարափները լաւ ծանօթ էին Աւետիսին, նրա ծննդավայրի հարաւում մասերն էին. նա շատ էր թափառել, պատանի ժամանակը մանաւանդ, այդ կողմերում. Յիշեց։ Յիշողութիւնների անհուն լոյսի մէջ՝ նորէն որոնեց երեխաներին… ու լոյսը հանգաւ։ Լուռ մղկտաց Աւետիսը և արագ ընազդային մղումով նայեց յետ՝ դէպի Մուքայէլը, որ երկու քայլից էր քշում ձին. «Մուքայէլ…»

Մուքայէլն էլ, որ մեծ ուշով մօտիկ էր տուել գետակն ի վեր՝ դէպի քարափները, նոյն այդ վայրկեանին նրա կողմը դարձրեց երեսը։ Լռելեայն, երկուսն էլ միեւնոյն պատասխանը տուին իրար. «հա, տեսնում եմ»։

Ջորի խորքում քրդեր երեւացին՝ կանանցով ու երեխաներով։ Փախստականների մի խումբ էր, որ քարերի մէջ պատսպարուած՝ կրակ էին արել։ Կրակի ծուխն էր նախ, որ գրաւել էր Աւետիսի ու Մուքայէլի ուշադրութիւնը։

Միւս տղաներն էլ տեսան և իսկոյն թռան՝ բռնեցին քարափները երկու կողմից էլ։ Բայց չկրակեցին, Աւետիսը թոյլ չտուեց. «պէտք չէ, պէտք չէ, անդէն են»։

Քրդերն իրար անցան. ճողոպրելու ճամբայ չկար սակայն և նրանք վայնասունով մտան ժայռերի արանքները։

Մուքայէլը յուզուեց ինքնիրան. «Սաղ քարուքանդ անենք։ Ինչքան սուս արինք՝ բոլ ա»։

Աւետիսը բան չասաց. մտածում էր կարծես։ Ձին տաքացել էր, սարթացել, չէր ուզում կանգնել, կրծում էր սանձը…

—«Դէ հը՛»—շտապեցրեց Մուքայէլը անհամբեր. «Էրգալ մտածելու բան չի։ Ձեր գեղը մ՞տդ ա, Էրեխէրքդ բա մ՞ըղը՞

չէին, որ սրանք կըտորեն՝ ով ա իմանում որ ձորն են թափել մէյիդները՝ գիլաններին փայ—բաժին»։

Ասլանի սիրտը խառնուեց. երեսը վառուեց ու այրուեց։ Կուրծքը լայնացաւ, ուռաւ խառը զգացմունքների հեղեղից… Ամենը բաց թողեց և առաջ անցաւ հասաւ քրդերին։ Մուքայէլն ու տղաները հետևեցին։

Քրդերը աղաղակ բարձրացրին։ Մուքայէլը ձեռքը տարաւ դէպի ատրճանակը՝ հանեց դուրս… ճիչերը սաստկացան…

— «Թող, ջանըմ, թող»—բարկացաւ Ասլանը Մուքայէլի վրայ. «չե՞ս տեսնայ, կնիկ երեխայ կայ»։ Իջաւ ձիուց, կանգնեց, մօտիկ տուեց և ապա բարձրաձայն սաստեց քրդերին, որ չգոր-գոռան։

Մուքայէլը մռթմռթաց և ինքն էլ իջաւ ձիուց։ Երկու ծեր քուրդ, սարսափահար անվստահ դողդողալով, մի-մի երեխայի ձեռքից բռնած՝ մօտ եկան, աղերսանք արին։ Երեխաները լաց եղան և նորից վայնասուն ընկաւ քրդերի մէջ։

Ասլանը նայեց երեխաներին, շարունակելով լռել։ Մուքայէլն էլ նայեց, ուզեց պահել դէմքին բարկութիւն ու մռայլութիւն, ուզեց գոնէ անտարբեր մնալ, բայց ժպտաց… «Ի՞նչ նախշուն լակոտ ա, արա, էս մինը»—և ձեռքը տարաւ՝ շոյեց երեխայի գլուխը, «մազերի՞ն հլա. կասեննաս արբշում ըլի»։ Շոյեց, գուրգուրեց… յետոյ բարկացած շուռ եկաւ ու բղաւեց ծերունիների երեսին, որոնք, ոտքի ելած, կծկուել՝ ողորմութեան էին սպասում՝ անյոյս ու անհանգիստ։

—«Մի՞ էք բա մեր հայերին կըտորում. ձեզ մի վատութիւն ենք արե՞լ։ Գեղարէնքը դիփ թալանի էք տուել։ Հախը չի՞ բա, որ մենք էլ ձեզ ամենքիդ մորթենք, կոտորենք, կրակ տանք, քանդենք, կործանենք… Հայդէ, քի՛շ, էստեղից ռադ ըլէք, ձեր սարերը փախէք. թէ չէ ամեն վախդ հու համբերող ըլել չի… Հըլաքուէք կորէք ձեր չէյխի ու փաշի մօտ… ա՛յ ես ձեր չէյխի…»— և մտրակը բարձրացրեց…

—«Թող, ջանըմ, թող… Մենք երթանք»—ասաց Ասլանը։ Իսկոյն կարգադրեց, որ երեք ձիաւոր փախստականներին տանեն հրամանատարի մօտ, իսկ մնացած ձիաւորներով ինքն ու Մուքայէլը շարունակեցին ճամբան ձորի միջով։ Շտապում էր…

—«Թո՜հ…—քրթմնջաց Մուքայէլը. քիչ էր մնում՝ սպանէի պոռի… էս ջուռա էլ սի՞րտ կըլի, որ մեր սիրտն ա։ Անդէր սիրտս մին ասում ա՝ հէրն անիծած, սպանիր, կտորիր, էլ ջոգի մի՞ կնիկը որն ա, ըրէխէն որն ա… Մին էլ ասում ա՝ ախր ո՞նց սպանես… ախր ո՞նց սպանես… Հը՛, Ասլան, քու սիրտն էլ ա էսպէս։ Բա խի՞ քրդի սիրտը էսպէս չի»։

Վ. Վալադեան

## ՇԵՔՍՊԻՐ

Չորեքշաբթի, ապրիլի 23-ին, Թիֆլիսի ժողովարանում տեղի ունեցաւ Հայ Գրողների Ընկերութեան նախաձեռնութեամբ կազմուած հանդէսը ի յիշատակ 300-ամեակի Շեքսպիրի և Սերվանտէսի, որոնք վախճանուել են միևնոյն օրը, 23 ապրիլի 1616 թուականին։

Ճառեր արտասանեցին պ. Յովհ. Թումանեանցը և պ. Շիրվանզադէն։ Դասախօսութիւն կարդացին Շեքսպիրի մասին պ. պ. Թոթովեան և Իփէկեան, իսկ Սերվանտէսի մասին պ. Աղբալեան։

Մենք այստեղ չենք զեկուցագրում հետաքրքրական և գրական արժէք ունեցող այդ դասախօսութիւնների բովանդակութիւնը, այլ կաշխատենք համառօտ նկարագրել մի ուրիշ հարց, որ ակնարկեց պ. Տ. Իփէկեանը։ Խնդիրն այն է, որ Շեքսպիրն է եղել իր անունով մեզ յայտնի թատերգութեանց հեղինակը, թէ Ֆրանսիս Բէկոնը կամ լորդ Ռութլանդը։

Այսօր շատ տեղին է իմանալու՝ արդեօք ճի՞շտ է, որ աշխարհահռչակ եղել է այն Շեքսպիրը, որ ապրում էր Ստրատֆորդում, մսավաճառ էր և աւարտել էր միմիայն գիւղական տարրական դպրոց։ Դուցէ Շեքսպիրը թոյլ էր տուել իր անունը կրել մի ուրիշին, որ հանճար էր և պատճառներ ունէր իր անունը ծածկելու։

Այդ խնդրի մասին 1848 թուից գրուել է մօտ 600 հատոր, բայց ոչ մի հաստատուն եզրակացութեան չեն հասել։

Շեքսպիրի կենսագրութիւնը մթութեան քողով է ծածկուած այն պատճառաւ, որ նրա մահից հարիւր տարի անց միայն սկսեցին զբաղուել նրա կենսագրութեամբ։ Դիմել են անվստահելի աղբիւրների, զանազան անխիղճ գրողներ, որոնք, որպէս զի հասարակութիւնը հետաքրքրեն իրենց գրուածքներով, յերիւրում էին տեսակ տեսակ սուտ Շեքսպիրի կեանքից։

Պ. Ֆիրմէն Ռօզ զետեղել է «Revue de deux Mondes»-ի այս մարտի ամսուայ համարում մանրամասն լուրջ ուսումնասիրական վերոյիշեալ խնդրին։ Նախ և առաջ ժխտում են, որ Շեքսպիրն լինէր բոլոր այդ անունով յայտնի թատերգերի (պիէսների) հեղինակը, աչքի առաջ ունենալով այն հակապատկերը, որ ներկայացնում է Շեքսպիրի անձնական կեանքը և այն հարուստ և բազմազան կեանքը, որ նկարագրում են Շեքսպիրի ողբերգութիւնները, դրամաները և կոմեդիաները։

Գրուածքի միտքն է. իրողութիւն է, որ Շեքսպիրն իրօք մի գիւղական մսավաճառ էր, անգրագէտ, անկիրթ, առանց գրքերի, որ դարձաւ նախ թատրոնի սպասաւոր, ապա դերասան։ Ի՞նչպէս ուրեմն այդ տեսակ մարդը, առանց հարկաւոր պատրաստականութեան կարողացաւ Համլէտ ողբերգութիւն և մի 30 այլ հռչակաւոր թատերական երկեր գրել։ Ապացուցուած է նոյնպէս, որ Շեքսպիրը 18 տարեկան հասակում, երբ Ստրատֆորդ գիւղումն էր, նոյն իսկ գրել չը գիտէր։ Հենց այդ հասակում Շեքսպիրը 5—6 տարի թափառում է մի խումբ գողերի հետ, յետոյ դառնում է թատրոնում ձիապան և սպասաւոր։ Եւ ահա այդ օրուանից Շեքսպիրը ծախում է իր անունը մի գաղտնի, խորհրդաւոր հանճարի, և բնակութիւն հաստատելով Ստրատֆորդում՝ առնում է ազնուականական տոհմանշան և վարում է փոքր գիւղաքաղաքում միջին դասակարգի քաղաքացու կեանք, փառասէր, եսական, ագէտ մի անասնական կեանք։ Ի նկատի առնելով այն դռեհիկ կեանքը, որ նա վարում էր հաստատ աղբիւրից ապացուցուած, սկսուել է տարածուել, որ Շեքսպիրի թատրոնական պիէսների ստեղծողը չէ Շեքսպիրը ինքը, այլ մի այլ անյայտ մարդ, որ մօտ էր պալատական կեանքին, ունէր նուրբ գրական ճաշակ, օտար չէր քաղաքական կեանքին, ծանօթ էր պատմութեան և այլն։ Այդ տեսակ մարդ էր Անգլիայի վերածնութեան, Եղիսաբեթ թագուհու առաջին նախարար Ֆրանսիս Բէկոնը։

Այդ թեզիսը պատճառաբանում են հետևեալ կերպով. մի կուլտուրական անգլիացու համար հարկաւոր է 3000—4000 բառ, Միլտոնը իր գրուածքներում գործ է ածել մօտ 1000 բառ, իսկ Շեքսպիրի թատերգերում գտնում ենք մօտ 15000 բառ։ Բէկոնն ուսումնասիրել է համեմատական լեզուաբանութիւնը, որով աշխատում էր հարստացնել անգլիերէնը։ Համեմատելով Բէկոնի կեանքը և Շեքսպիրի թատերգերը, կարողացել են յանգել այն եզրակացութեան, որ Բէկոնը պէտք է լինէր այդ գրուածքների հեղինակը։ Մի փաստ, որ բերում է պ. Ֆիրմէն Ռօզը, այն է, որ Բէկոնի թղթերում գտնուած են Շեքսպիրի պիէսների սևագրութիւնները։

Մի այլ կարծիքի են անգլիացոց գրողները, որոնք պնդում են, որ Շեքսպիրն էր լորդ Ռութլանդը։

Բայց վերջ ի վերջոյ այդ բոլոր ենթադրութիւնները տանում են դէպի անհեթեթութիւն, որին այդ տեսակ անհեթեթ պնդումներին հասել է գերմանացի գրող Կարլ Բլայբը, որ 1907 թուին իր երկհատոր գրքում ճգնում է ապացուցանել, որ Շեքսպիրը գերմանացի էր։

Վերջացնենք այս տեսութիւնը Ֆիրմէն Ռօզի խօսքով, ինչպէս ասում են և բոլոր անգլիացիք—Շեքսպիրը Շեքսպիրն էր, Շեքսպիրը անգլիացի էր։

Տիգրան Աթարբեգեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

**„ՀԱՄԲԱՒԱԲԵՐ“-ի** համար հարկաւոր է մի երիտասարդ գրագիր. ցանկացողները կարող են դիմել խմբագրատունը՝ Абасъ-Абатска яплощадь № 7. Առաւօտեան ժամի 1—2։

---

**ՎԵՀԱՓԱՌՈՒԹ ԹՈՅԼՏՈՒՈՒԹԵԱՄԲ ԿՐՕՆԻ ԴԱՍԱԳՐՔԵՐ**

## ՔԱՄԱԼԵԱՆՑ Ս-Ի

ա. տարի—Բարոյախօսական առակներ և Յիսուսի կեանքից պատմուածներ . . . 15 կ.
բ. » Նահապետների կեանք, Աբրահամից մինչև Յովսէփի մահը . . . 20 »
գ. » Առաջնորդների, դատաւորների, թագաւորների կեանք, Մովսէսից մինչև Յերոբովամ . . . . 35 »
դ. » Մարգարէներ—Եղիայից մինչև Յովհաննէս . . . . 40 »
ե. » Յիսուսի կեանքը և գործունէութիւնը մինչև Համբարձում . . . 50 »
զ. » Ջեռնարկ դասատուների համար — ա. տարի 40 »

Դիմել՝ Թիֆլիսի գրավաճառներին կամ հեղինակին՝ Միքայէլեան փողոց № 82. 2—1

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ

Չերնիգով նահ. Պիլենկօ գիւղից խնդրում են, ով որ և է տեղեկութիւն Մշոյ շրջանի Սահակ գիւղացի Աւետիս և Խաչիկ Ռոստոմ Յակոբեաններից կամ երեխաներից ազատուածների մասին գիտէ, բարեհաճէ հաղորդել։
Черниг. губ. сел. Пиленко, М. Акопяну. 2—1

---

1915 թ. դեկտ. Արդահանի և Սարիղամիշի կռուին տաճիկ զօրքից գերի են ընկել Ռուսաստան Ծափնայ գիւղացի Ղազար Յովակիմեան և այլք։ Դրանց տեղը իմացողներին խնդրում են յայտնել Ամերիկայի՝ Ակրօն քաղաք, Մուրադեանին, անգլիերէն հետևեալ հասցէով.
M. Mooradian. 663 S. Main st. Okron Ohio U. S. 2—1

---

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԱՐՀԵՍՏԱՆՈՑՈՒՄ

Գանովսկայա փող. № 3. ծախւում են երեխաների շորեր մատչելի գներով, սրբիչներ, ծրարներ, փոստի թուղթ և այլն։ Ընդունում են պատուէրներ աթոռների վերանորոգութեան։

---

**ԹՈՔԱԽՏԻ** դէմ մաքառող Կովկասեան Ընկերութեան Սպիտակ ծաղիկի» երթեկ հիւանդանոցը ընդունում է հիւանդներ ամենայն օր (բացի կիրակի և տօն օրերից) առաւօտեան ժ. 9—11-ը։

ԲԺՇԿՈՒԹԻՒՆԸ ՁՐԻ Է։

Փետրուարի 19-ի փ. № 47՝ Մուխրանեան կամուրջի դիմաց։ 1—10

---

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

արհեստանոցում ընդունում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և գիւտական գրքեր։
Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։

---

**ՓՆՏՌՈՒՄ ԵՆ**

կորած փախստական երեխայ

**ԱՀԱՐՈՆ ՅԱԿՈԲԵԱՆՑ**

Վանի շրջանից, Հայաստէր գաւառի Աթանանց գիւղացի, 10 տարեկան, անգրագէտ։ Ազգականները նրան կորցրել են անցեալ ամառ, մեծ գաղթի ժամանակ։ Փնտռում է հօրեղբայր Մովսէս Մուրադեանը։ Տեղեկութիւն հաղորդել «Համբաւաբեր»ի խմբագրութեան։

---

## ՓՆՏՌՈՒՄ ԵՆ՝

1) Վանեցի Վանուշ Պետրոսեան 6 տարեկան։
» Սահակ » 4 »
մօր անունը Պայծառ։ Փնտռողն է մայրը։
2) Մոկացի Տմխ գիւղ. Համբարձում Շահինեան 12 ա
» » Պայզան » 15 »
» » Շահէն Աւետիսեան 45 »
Փնտռողն է Շահէնի եղբայր Գալուստը։
Տեղեկութիւնները հաղորդել Երևան, առաջնորդարան։

---

ԱՆԵՐԵՒՈՅԹ ԱՂԵՔՍԱՆ ՔԱԻԱՅԵԱՆԻՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում ստացուել է Ամերիկայից մի նամակ և մի տոմս Սրխանգելսկից մինչև Ամերիկա ձեր անունով։ Խնդրում ենք մտնել Ընկերութեան գրասենեակը և ստանալ նամակն ու տոմսը։ 2—2

---

**ՀԱՐԿԱՒՈՐ ԵՆ** ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ

1. Ֆելդշերներ, 2. սանիտարներ, 3. գրասենեակի գործավար և 4. ռեմինգտոնի վրայ գրող։ Ցանկացողները պէտք է դիմեն
Тифлисъ, Абасъ-Абадская площадь, д. № 7.

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ **Գ. ԷԴԻԼԵԱՆԻ** ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆԸ

## ՍԵԴՐԱՔ ՄԱՆԴԻՆԵԱՆ

ԳԻՆՆ Է 20 ԿՈՊ.

ՀԵՂԻՆԱԿԻ ՄԻՒՍ ԵՐԿԵՐԸ

Քննադատ. Յիլերի Ջեւկան ստեղծագործ . . . 50 կ.
Դաստիարակման ձևեր. . . . . . . . . 50 կ.
Դաստիարակման խնդիրներ . . . . . . . 65 կ.
Շանթի Հին Աստուածներ . . . . . . . 15 կ.

---

Շարունակւում է բաժանորդագրութիւն 1916 թ. «Գաւառի Ձայն» ժողովրդ. թերթի, երրորդ տարի. բաժանորդագինը՝
Տարին—4 ռ., 6 ամիսը—2 ռ. 50 կ., 3 ամիսը՝ 1 ր. 70 կ., 1 ամ. 50 կ.
Խմբագիր-հրատար. Յովսէփ Միրզոյեան։ 3—2
Հասցէ. Александрополь, ред. „Гавари Цайн“
Ծանօթ. Թերթի հրատարակութիւնը ապահովուած է։

---

**ՓՆՏՌՈՒՄ ԵՆ**

Մուշեղ Գուլանեան Ամրջեանց՝ որ կորել է Բիթլիսի շրջանից, մեծ գաղթին։ Տեղեկութիւն ունեցողներն խնդրում են յայտնել «Համբաւաբերի» խմբագրատանը։

---

ՅՈՒԵԼՈՒԱԾ № 20

# „ՀԱՄԱՅԱՐԱՅԵԼ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

Մոսկուայի Հայկ. կոմ. Աշտարակի

II և IV որբանոցի

25 փետր. 1916 թ.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծանօթութիւն |
|---|---|---|---|---|
| 1 | Արմենակեան Միսակ | Մուշ | 10 | |
| 2 | Ազիզեան Մարիամ | » | 12 | |
| 3 | Ասոյեան Աբրահամ | » | 11 | |
| 4 | Աւետիսեան Վարդանուշ | Ալաշկերտ | 10 | |
| 5 | » Մկրտիչ | » | 8 | |
| 6 | Ամրոյեան Մաքրուհի | Ժամք | 13 | |
| 7 | Աւետիսեան Բերսաբ | Բուլանըխ | 8 | |
| 8 | Աստոյեան Ալէքսան | » | 9 | |
| 9 | Բաղդասարեան Աղնիւ | Խլաթ | 9 | |
| 10 | » Գրիգոր | Սրինձոր | 10 | |
| 11 | » Յովսէփ | » | 9 | |
| 12 | Բարսեղեան Արաքսի | Վան | 9 | |
| 13 | » Ֆինջօ | Բուլանըխ | 3 | |
| 14 | Գէորգեան Մուշեղ | Արճէշ | 12 | |
| 15 | Գասպարեան Ղազար | Ժամք | 14 | |
| 16 | » Սրբուհի | » | 12 | |
| 17 | Գաբրիէլեան Զմրուխտ | Սոֆատ | 13 | |
| 18 | Գրիգորեան Խաչատուր | Բէսատան | 12 | |
| 19 | » Արտաշէս | Նոնո | 9 | |
| 20 | Դաւթեան Սերոբ | Նարեկ | 11 | |
| 21 | Զաքարեան Մկրտիչ | Կոփ | 10 | |
| 22 | » Ալէքսան | » | 8 | |
| 23 | » Սաթենիկ | Բուլանըխ | 8 | |
| 24 | Թանգովեան Աղասի | Վան | 10 | |
| 25 | » Ռոզա | » | 5 | |
| 26 | Խաչատրեան Վարագդատ | Վան | 13 | |
| 27 | » Սիրվարդ | » | 14 | |
| 28 | » Մարինէ | Մուշ | 11 | |
| 29 | » Նազլու | Մարգեղ | 14 | |
| 30 | » Վազգէն | Դարմոն | 11 | |
| 31 | » Սիրվարդ | Վան | 9 | |
| 32 | » Յարութիւն | Կառկառ | 12 | |
| 33 | » Նուարդ | Վան | 4 | |
| 34 | Խուրշուդեան Իգիթ | Բիթլիս | 15 | |
| 35 | Կարապետեան Գիւլնազ | Բուլանըխ | 7 | |
| 36 | » Զիզո | » | 14 | |
| 37 | » Նուարդ | » | 12 | |
| 38 | » Զարգանդ | » | 6 | |
| 39 | » Վիրսան | » | 11 | |
| 40 | » Ներսէս | Ալիւր | 11 | |

| | | | |
|---|---|---|---|
| 41 | Համբարձումեան Արմենակ | Սոֆատ | 4 |
| 42 | Ղազարեան Մաքրուհի | Վան | 15 |
| 43 | » Մշակ | Ատմակ | 11 |
| 44 | Մարգարեան Դաւիթ | Շահբաղ | 14 |
| 45 | » Խաչիկ | » | 12 |
| 46 | » Ազատ | Մուշ | 11 |
| 47 | » Արմենակ | Խլաթ | 10 |
| 48 | » Նարդուխ | Արճէշ | 4 |
| 49 | Մանուկեան Վարսենիկ | Վան | 11 |
| 50 | » Ագրինէ | » | 9 |
| 51 | » Իսկուհի | » | 15 |
| 52 | » Ֆիրուզ | Ախլաթ | 10 |
| 53 | Մժակեան Ազնիւ | Նարեկ | 16 |
| 54 | Մարտիրոսեան Վահան | Մուշ | 12 |
| 55 | Մկրտչեան Մուրադ | » | 14 |
| 56 | » Աղաւնի | Վան | 14 |
| 57 | » Թակուշ | Կալէսար | 13 |
| 58 | » Վարդանուշ | » | 7 |
| 59 | » Զարուհի | Դարման | 10 |
| 60 | » Խաչատուր | » | 11 |
| 61 | Մխմափարաջեան Կարապետ | Վան | 8 |
| 62 | » Կարմէն | » | 7 |
| 63 | Միքայէլեան Սիրանուշ | » | 12 |
| 64 | Միսակեան Թոմաս | Մարմէտ | 10 |
| 65 | Մուշեղեան Ռուբէն | Արինձոր | 9 |
| 66 | Մուրադեան Միսակ | Բէսանց | 13 |
| 67 | Մնացականեան Վարդան | Ժամք | 13 |
| 68 | Յակոբեան Պետրոս | Խլաթ | 10 |
| 69 | » Մաքրուհի | Մաղդակ | 15 |
| 70 | » Պայծառ | » | 11 |
| 71 | » Արաքս | Վան | 14 |
| 72 | Յարութիւնեան Կարապետ | Արճէշ | 11 |
| 73 | » Յովհաննէս | Վան | 10 |
| 74 | Յովհաննիսեան Արշակ | Շատախ | 15 |
| 75 | » Գենովարէ | Վան | 12 |
| 76 | » Գրարգոն | Շահբաղ | 13 |
| 77 | » Արծրուն | Վան | 12 |
| 78 | » Յուդիթ | » | 7 |
| 79 | Նազարեան Ալմաստ | Բուլանըխ | 12 |
| 80 | » Ռուբէն | » | 11 |
| 81 | Շաքարեան Սուրէն | Վան | 13 |
| 82 | » Վարդան | » | 13 |
| 83 | Ոսկանեան Պետրոս | Մաշտոց | 3 |
| 84 | Պետրոսեան Վարդանուշ | Սոֆատ | — |
| 85 | Պողպատեան Երուանդ | Վան | 6 |
| 86 | Սալամեան Արմենակ | » | 8 |
| 87 | Սահակեան Յովհաննէս | Բէսանց | 12 |
| 88 | Սարգսեան Աւետիս | Վան | 13 |
| 89 | » Գալուստ | » | 10 |
| 90 | » Զմօ | Ալաշկերտ | 13 |
| 91 | Սաֆարեան Սալաթ | Սոֆատ | 8 |
| 92 | Սերոբեան Վարդան | Վան | 13 |
| 93 | » Տիգրան | » | 8 |
| 94 | » Դաւիթ | Փրխուս | 10 |
| 95 | » Ասատուր | Բուլանըխ | 11 |
| 96 | Տէր-Մկրտչեան Յարութիւն | Մեցան | 11 |
| 97 | Փոխանեան Շախօ | Կէմ | 10 |
| 98 | » Դաւիթ | Տարօն | 12 |
| 99 | Փանոսեան Սուրէն | Վան | 13 |

## III որբանոց.

| | | | |
|---|---|---|---|
| 1 | Աբրոյեան Շմաւոն | Մուշ | 7 |
| 2 | » Մաքրուհի | » | 6 |
| 3 | Աստուածատրեան Համազասպ | Վան | 6 |
| 4 | Ատրիկեան Գուհարիկ | » | 3 |
| 5 | Արշակեան Վարսենիկ | » | 7 |
| 6 | Արտեմեան Բաղդասար | » | 8 |
| 7 | Աւետիսեան Մեսրոպ | » | 3 |
| 8 | Գալստեան Արշաւիր | » | 11 |
| 9 | Գասպարեան Մարգար | Շատախ | 8 |
| 10 | Գրիգորեան Քրիստինէ | » | 15 |
| 11 | » Վարսենիկ | » | 6 |
| 12 | » Միքայէլ | Խըլգան | 5 |
| 13 | » Դաշնակ | Վան | 7 |
| 14 | » Պարգև | Շատախ | 8 |
| 15 | Գարկոյեան Ծաղիկ | Վան | 3 |
| 16 | Գագիկեան Սեդրակ | Խուլգան | 5 |
| 17 | Ջատիկեան Ագնիւ | Վան | 7 |
| 18 | Թորոսեան Եղիսէ | Բերդակ | 9 |
| 19 | Խաչատրեան Քրիստինէ | Վան | 7 |
| 20 | Կարոյեան Մուշ | » | 8 |
| 21 | » Ագնիւ | » | 11 |
| 22 | Կարապետեան Էփրաքսիա | » | 11 |
| 23 | Կարիրջանեան Արաքսի | Ալաշկերտ | 14 |
| 24 | Ղազարեան Զարուհի | Բերդակ | 13 |
| 25 | Մուշեղեան Կարտիֆ | Փրխուս | 8 |
| 26 | Մամբրէյեան Նարդուխ | Վան | 4 |
| 27 | Մանուկեան Մարգարիտ | » | 18 |
| 28 | Մարկոսեան Գաբրիէլ | » | 8 |
| 29 | Մելքոյեան Զօզոն | » | 8 |
| 30 | Միքայէլեան Գառնիկ | Բերկրի | 9 |
| 31 | » Սաթենիկ | Արթ | 8 |
| 32 | » Արփենիկ | » | 3 |
| 33 | Մխոյեան Բաղդասար | Վան | 7 |
| 34 | » Դալարիա | Լէզ | 5 |
| 35 | » Ջէյրան | Վան | 14 |
| 36 | Մկոյեան Արմենուհի | » | 8 |
| 37 | » Արշալոյս | » | 4 |
| 38 | » Մաքրուհի | » | 8 |
| 39 | » Սիրուշ | Շատախ | 7 |
| 40 | » Պօղոս | Բերդակ | 8 |
| 41 | » Աւետիս | Անգղ | 8 |
| 42 | Մուրադեան Մարիամ | Վան | 11 |
| 43 | » Փէջան | » | 8 |
| 44 | Մովսիսեան Աւետիս | Բեաբարի | 7 |
| 45 | » Նշան | Բերդակ | 8 |
| 46 | » Օդիկ | Վան | 8 |
| 47 | Մուրադեան Արամ | » | 5 |
| 48 | Յովհաննիսեան Պարգև | Մուշ | 8 |
| 49 | » Ասպետ | Վան | 4 |
| 50 | » Երուանդ | » | 6 |
| 51 | » Սաշէն | » | 8 |
| 52 | Յարութիւնեան Արամ | » | 10 |

| | | | |
|---|---|---|---|
| 53 | Պետրոսեան Մովսէս | » | 4 |
| 54 | » Դերենիկ | Ալաշկերտ | 8 |
| 55 | » Աղավարդ | Վան | 9 |
| 56 | » | — | — |
| 57 | Սեդրակեան Աղաւնի | Փրխուս | 7 |
| 58 | Սեպտակեան Պապկոր | » | 11 |
| 59 | Վետոյեան Սանամ | Նորշէն | 4 |
| 60 | Տիգրանեան Մարիամ | Վան | 8 |
| 61 | Փանոսեան Սիրանուշ | » | 8 |

Ղարաքլիսայի «Թայիրեան» որբանոցի 1 մարտի 1916.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գրագէտ է | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Սերոբ | Աոլիկ | 10 | — | — | — | |
| 2 | Աղիզեան Ատրինէ | Վան | 9 | — | — | — | |
| 3 | Արսէնեան Հուրեաթ | Կոփ | 8 | — | — | — | |
| 4 | Գասպարեան Սանդուխտ | Բուլանըխ | 11 | — | — | — | |
| 5 | Գալստեան Վարդանուշ | Աւանց | 10 | — | — | — | |
| 6 | Գէորգեան Վարդանուշ | Արտիշ | 8 | — | — | — | |
| 7 | » Ալիսա | Խաչանց | 7 | — | — | — | |
| 8 | « Աստղիկ | Վան | 9 | — | — | — | |
| 9 | Հայգիտեան Սոսէ | Մանազկերտ | 8 | — | — | — | |
| 10 | Ղազարեան Խաչալ | Արկ | 8 | — | — | — | |
| 11 | Մանուկեան Մոզպրէս | Խալաթ | 8 | — | — | — | |
| 12 | » Փառո | Խիզան | 10 | — | — | — | |
| 13 | Մոսէսեան Մարիամ | Էրէկ | 10 | — | — | — | |
| 14 | Յարութիւնեան Եսթէր | Արտէմէտ | 8 | — | — | — | |
| 15 | » Առաքել | Խոսպ | 11 | — | — | — | |
| 16 | Նիկողոսեան Մարիամ | » | 11 | — | — | — | |
| 17 | Մխիթարեան Ռեհան | Բուլանըխ | 10 | — | — | — | |
| 18 | Պետոյեան Զուլօ | Խիզան | 9 | — | — | — | |
| 19 | » Լեոն | Էրէկ | 9 | — | — | — | |
| 20 | Սահակեան Սիրանուշ | Վան | 8 | — | — | — | |
| 21 | Սերոբեան Պայծառ | Արտիշ | 7 | — | — | — | |
| 22 | Սահակեան Սիրանուշ | — | — | — | — | — | |
| 23 | Թէոյեան Անահիտ | Նորաշէն | 10 | — | — | — | |
| 24 | Խաչատրեան Սաթենիկ | Ուրթող | 8 | — | — | — | |